# ՄԵՐ ՃԱՄԲԱՐԸ

*Ս. ՄՈՒՐԱԴՅԱՆ*

Հուր է թափում արեգակը,
Շոգ է, շոգ է քաղաքում,
Բայց հյուր արի դու մեր բակը,
Անչափ զով է մեր բակում:
Մի տեղ երգ է, մի տեղ նվագ՝
Ծառերի տակ հովասուն,
Մի տեղ ծիծաղ, մի տեղ կատակ —
Խնդություն է միշտ հոսում:
Սա անկյունն է փոքրիկների,
Շատ փոքրեր կան մեր բակում,
Տուն են շինում թիթեղներից,
Խաղալիքներ քանդակում:
Երբ իջնում է զով երեկոն,
Մեր խարույկն է բոցկլտում,
Հավաքվում ենք, ուրախ երգով
Օրվա վերջն ենք ավետում:
Հուր է թափում արեգակը,
Շոգ է, շոգ է քաղաքում,
Բայց ուրախ է միշտ մեր բակը,
Անչափ զով է մեր բակում:




# ՊԻՈՆԵՐ

ՀԼԿԵՄ-Ի ԿԵՆՏԿՈՄԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

№ 6
ՀՈՒՆԻՍ
1956 Թ. ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 28-ՐԴ ՏԱՐԻ






*Մի տեսարան «Դավիթ բեկ» օպերայից:*

## Հայ կուլտուրայի տոնը

Հունիսն է, ամռան առաջին ամիսը: Արևով է ողողված Մոսկվան: Կարծես թե հարավի արևը իրենց հետ այստեղ, մեծ մայրաքաղաքն են բերել հայ ժողովրդի արվեստի ու գրականության վարպետները:

Սովորաբար ամռան այս օրերին թատրոնների սեզոնը սկսում է փակվել: Մայրաքաղաքի արտիստները գնում են հանգստանալու, կամ ուրիշ քաղաքներում ելույթներ ունենալու: Բայց այս ի՞նչ է: Ի՞նչ աշխույժ է թատրոնների և համերգային դահլիճների շրջակայքում: Շատերն են ուզում տոմս ձեռք բերել: Բայց դեռ մի քանի օր առաջ արդեն սպառվել են տոմսերը: Ամեն մեկն ուզում



*«Նամուս» ներկայացումից*

է անպայման ծանոթանալ հին ժողովրդի կուլտուրային:

Եվ ահա Մեծ թատրոնի հոյակապ դահլիճը լեփ-լեցուն է հանդիսականներով:

Հանդարտ բացվում է վարագույրը: Լսվում է նվագախմբի ձայնը. երգում է Սանրուրը: Հայ խեղճ գեղջուկից պարսկական բռնակալները խլել են ամեն ինչ... Սանրուրը պատմում է իր դառն ցավերի մասին: Ծանր է նրա դրությունը. օրհասական էր հայ գյուղացու վիճակը պարսկական բռնակալության ժամանակ:

Ապա հաջորդում են ֆայլերգի խրոխտ հնչյուններ: Լսվում են ապստամբների կանչերը, նրանք զենք են բաժանում: Ծագող արևի ճառագայթները ողողում են շրջապատը, ցրում խավարը...

Այսպես է սկսվում «Դավիթ բեկ» հերոսական օպերան: Հանդիսատեսը տեսնում է և՛ քաջ հայրենասեր Դավիթ բեկին, և՛ մյուս հայրենասերներին, որոնք պայքարում էին, որպեսզի Հայաստանը ազատագրեն պարսկական բռնապետությունից:

Ինչքա՜ն ջերմ, սրտաբուխ են հայ նշանավոր կոմպոզիտոր Արմեն Տիգրանյանի ստեղծած հոյակապ ժողովրդական մեղեդիները, խմբական երգերը... Ի՜նչ հրաշալի է ձևավորված ներկայացման ամեն մի տեսարան: Ժողովրդական նկարիչ Մարտիրոս Սարյանը և նրա աշակերտները շատ են աշխատել, որ Հայաստանի արևոտ գույները հաղորդեն ներկայացմանը:

Իսկ օպերային թատրոնի մյուս ներկայացումները՝ հայ առաջին օպերան՝ Տիգրան Չուխաջյանի «Արշակ երկրորդը», Արմեն Տիգրանյանի անկրկնելի «Անուշը», Գրիգոր Եղիազարյանի կոլտնտեսային ուրախ կյանքի մասին գրած «Սևան» նոր բալետը, ռուս մեծ կոմպոզիտոր Չայկովսկու «Պիկովայա դաման»...

Իսկ ինչքա՜ն լավն են Սունդուկյանի, Լենինականի Մռավյանի, Ստանիսլավսկու անվան թատրոնի ներկայացումները...

Ահա մենք տեղափոխվում ենք հին Շամախի, Սեյրանի ու Սուսանի ծննդավայրը, տեսնում ենք նրանց անմեղ մանկությունը...

Ինչքա՜ն շատ է խաղացվել Շիրվանզադեի «Նամուսը», Սունդուկյանի անվան թատրոնում:



*Զույգ «Սևան» բալետից*





Հայկական երգի-պարի վաստակավոր անսամբլի ելույթը։

Այդ պիեսը խաղացել են բեմի վարպետները՝ Հովհաննես Աբելյանը, Արուս Ոսկանյանը, Հասմիկը և ուրիշները: Բայց զարմանալի բան. այսօր բեմում բոլորը երիտասարդներ են: Եվ Մոսկվան



Վ. Վաղարշյանը Եգոր Բուլըչովի դերում։




ծափահարում է նրանց: Նշանակում է նրանք մեծ վարպետներին լավ փոխարինողներ կդառնան...

Հանդիսատեսը տեսնում է նաև մեր թատրոնների մեծ նվաճումները, խոշոր երգիծաբան Հ. Պարոնյանի «Պաղտասար աղբարը», Գորկու «Եգոր Բուլըչովը և ուրիշները», Նաիրի Զարյանի «Փորձաղաշտը», Դ. Դեմիրճյանի «Երկիր հայրենին», Պագոդինի «Կրեմլյան զանգերը» և ուրիշ պիեսներ:

Ահա և մի այլ դահլիճ: Հնչում են հայ ժողովրդական գործիքների՝ սազի, քանոնի, բուքակի, դուդուկի աննման ձայները: Թնդում է զվարթ երգը: Երգի-պարի վաստակավոր անսամբլը կատարում է «Փառք Հայրենիքին» սյուիտը...

Հիացմունք են պատճառում կանացի նազելի պարերը՝ «Ծափ պարը», «Սարերի հովին մեռնեմ» և այլն:

Շարժվում են հեզաճկուն ձեռքերը, շարժվում են ոտքերը, լույսերի տակ շողշողում են շքեղ ազգային հագուստները, վառվում հազար գույներով:

Դրանց փոխարինում է հովիվների պարը: Ի՜նչ առույգ, եռանդուն, ոգևորիչ են նրանց շարժումները: Ապա հաջորդում են լիրիկական և կատակային երգերը, պարերը...

Ահա և Հայաստանի պետական երգչախմբի ելույթները:

Հանճարեղ Կոմիտասի «Գութանի երգի» հնչյունները փռվում են, տարածվում ընդարձակ դահլիճով մեկ, մերթ մեղմալուր իջնում, մերթ թափ առնում, ալիքի պես բարձրանում, խուժում մարդկանց սրտերը: Ինչքա՜ն տանջանք կա այդ երգում, ինչքա՜ն սպասելիքներ...

Ի՜նչ աշխույժ է Կարա Մուրզայի «Գացեք տեսեք» երգը.

Գացեք տեսեք, ով է կերել գել,
Գացին տեսան՝ արջն է կերել գել...

Այդտեղ կա և՛ վախ, և՛ զարմանք, և՛ անսահման զվարթություն:

Պարզ ու վճիտ են հնչում մեր պայծառ օրերի մասին գրված երգերը, որ ստեղծել են սովետական հայ կոմպոզիտորները:

Մի այլ տեղ բնդում է սիմֆոնիկ նվագախումբը: Կատարվում է Արամ Խաչատրյանի լավագույն գործերից մեկը՝ «Երկրորդ սիմֆոնիան»...

Տասնօրյակին մասնակցում են մեր բեմերի լավագույն վարպետները՝ Վահրամ Փափազյանը, Վաղարշ Վաղարշյանը, Հրաչյա Ներսիսյանը, Գոհար Գասպարյանը, Տաթևիկ Սազանդարյանը և շատ ուրիշները:

Եզրափակիչ մեծ համերգին ներկա էին պարտիայի ու կառավարության ղեկավարները:

Ընդարձակ ու լուսավոր սրահներում ցուցադրված են հայ նկարիչների նոր գործերը: Այստեղ կարելի է տեսնել Հայաստանի հրաշալի բնանկարները:

Ահա հեքիաթի սիրված հերոսուհին՝ Անահիտը: Նա բազվորական զարդերը մի կողմ թողած, կանգնած դազգահի մոտ՝ դիպակ է գործում: Վառվում են գույները, երևում է նրա վարժ մատների աշխատանքը: Դա նկարիչ Գրիգոր Խանջյանի ստեղծած նոր գործն է: Այստեղ կան ժողովրդի հեղափոխական փառավոր անցյալը պատկերող կտավներ:

Ահա տասնմեկերորդ բանակի մուտքը Հայաստան, որը պատկերված է Խորենյանի «Կարմիր առավոտում»:

Ցուցադրված են նշանավոր մարդկանց՝ հերոսների, բանվորների և կոլտնտեսականների, գիտության և կուլտուրայի գործիչների դիմանկարները, նրանց աշխատանքային առօրյան ու հերոսությունը պատկերող գործեր:



*Նախօրյակին   Քանդակ Ղ. Չուբարյանի*

Իսկ գրաֆիկա՞ն, քանդակագործությունը, ինքնուս վարպետների ձեռքի աշխատանքները, նարտարապետների կատարած գործերը...

Մոսկվայի կինոէկրաններում հաջողությամբ ցուցադրվում են Երևանի Կինոստուդիայի նոր նկարները՝ «Պատվի համար», «Ամպրոպի արահետով»: Իսկ կրկեսում ելույթ է ունենում կրկեսային ազգային խումբը:

Ժողովրդի հետ հանդիպումներ են ունենում հայ գրողները, քննարկվում են նրանց նոր գործերը: Նրանք այս օրերին հրատարակել են հարյուր անուն գիրք: Դրանց մեջ են Թումանյանի, Իսահակյանի, Չարենցի, Բակունցի, Դեմիրճյանի և շատ գրողների նոր գործերը: Հունիսի 2-ին Միությունների տան սյունազարդ դահլիճում բացվեց հայ գրականությանը նվիրված երեկոն, իսկ հունիսի 10-ին Պետական կոնսերվատորիայի Մեծ դահլիճում եզրափակիչ նիստն է տեղի ունենում: Ելույթ են ունենում գրողները, նրանք կարդում են նոր բանաստեղծություններ: Նրանք հանդես են եկել՝ Կարմիր Բանակի կենտրոնական տանը, գործարաններում, բզբոսայգիներում: Ամենուր նրանց ընդունում են ջերմորեն: Ահա Մոսկվայի պիոներները շրջապատված հայ մանկական գրողների լայն շրջանով, լսում են նրանց մանկական ոտանավորները:

Ամեն տեղ կյանք կա, ամեն տեղ աշխուժություն: Ի՜նչ հետաքրքրական և լավ են այս օրերը: Հայ ժողովուրդը Մոսկվային և աշխարհին ցույց է տալիս իր հնից եկող, բայց միշտ նոր ու գեղեցիկ, վերածնված կուլտուրան:





# ԱՆՀԱՅՏ ՄԱՐԴԻԿ*)

ԱԶԱՏ ՇԱՀԻՆՅԱՆ

Նկ. Գ. ԽԱՆՋՅԱՆԻ

## Ա՞Յ ՔԵԶ ՀԱՆԵԼՈՒԿ...

Զանգը հնչեց։ Դեռ նոր էինք դասարան մտել, երբ մեր ետևից ներս մտավ ուսմասվարը և հայտնեց, որ առաջին ժամը ազատ ենք լինելու։ Մենք դուրս եկանք դասարանից։ Հենց այդ պահին իմ գլխում մի միտք ծագեց. «ընկեր Մարությանը փոքր հիվանդ է, իսկ ո՞վ պետք է մաքրի նրա տանիքը՝ եթե ոչ՝ մենք։ Չէ՞ որ նա մենակ է ապրում...»։ Ես Վահանին հայտնեցի իմ որոշումը։

— Ա՛յ թե հիանալի բան ես մտածել, Վազգեն,— ոգևորված բացագանչեց Վահանը և ավելացրեց,— Սուսամբար մայրիկն էլ օգնող չունի։ Նրա տանիքը նույնպես հարկավոր է մաքրել։

Վահանը հավաքեց խմբի մյուս անդամներին և պատմելով մեր որոշումը հայտնեց, որ մութն ընկնելուն պես բոլորս հավաքվենք ջրաղացում։

— Ամեն մեկդ ձեզ հետ ձյուն մաքրելու համար թիակներ կվերցնեք։

Հենց որ մութն ընկավ, մենք կազմ ու պատրաստ հավաքվեցինք ջրաղացում և սկսեցինք որոշել, թե ով ինչ պետք է անի։ Մուկուշն ու Վահանը գնալու էին Սուսամբար մայրիկի տանիքը մաքրելու, ես, Սարգիսն ու Արամը՝ ընկեր Մարությանի։ Իսկ Գևուշն ու Վարդգեսը պետք է մեզ հետ գային և մարդ երևալու դեպքում՝ փախուստի ազդանշան տային ։

Թիակները ուսներիս՝ մենք աննկատ դուրս եկանք ջրաղացից։ Հասնելով դպրոցի շենքին, կանգ առանք։ Գևուշն ու Վարդգեսը գնացին հետախուզման։

— Գործը վերջացնելուց հետո կհավաքվենք այստեղ։ Միայն թե խնդրում եմ, տղե՛րք, էնպես արեք՝ մարդ չնկատի,— վերջին անգամ զգուշացրեց Վահանը, և մենք բաժանվեցինք։

Ծուռ ու մուռ ճանապարհներ անցնելուց հետո, մեր խումբը մոտեցավ բարձր ցանկապատով շրջապատված փոքրիկ այգուն։ Այգու ծայրին գտնվող միհարկանի տան մեջ լույս էր երևում։ Ցանկապատի մոտ կանգնել էր Գևուշը և սպասում էր մեզ։

— Դու մնա այստեղ, հենց որ մարդ երևա, սուլիր,— պատվիրեցի նրան։ Մենք ուշադիր զննեցինք շրջապատը և ցած թռանք ցանկապատի վրայից։ Կուզեկուզ մոտեցանք տանը։ Փայտե սանդուղքի վրայով մենք արագ տանիք բարձրացանք և սկսեցինք մաքրել։ Վերջացնելու վրա էինք, երբ հանկարծ ցանկապատի ետևից ուժեղ սուլոց լսվեց։ Մենք խառնվեցինք իրար։ Շփոթմունքից

* Սկիզբը տե՛ս «Պիոներ» № 5



Արամը ձեռքի թիակը ձյան հետ միասին շպրտեց բակը։ Մենք տանիքի վրայից ուղղակի փողոց ցատկեցինք։ Ցանկապատի եռևում կուչ էր եկել Գևուշը։

— Ընկեր Մարությանն էր, գիտե՞ք,— շշուկով ասաց նա,— դուք երևի էնպես եք դմդմբացրել կտուրը, որ նա…

Գևուշը մի պահ լռեց։ Բակից լսվեց ընկեր Մարությանի ձայնը։

— Այս ովքե՞ր էին տանիքի վրա։

— Նույնիսկ ինչ-որ բան շպրտեցին ներքև,— խոսեց մի ուրիշը։

Քիչ հետո նկատեցինք, թե ինչպես տանիք բարձրացավ ընկեր Մարությանը ինչ-որ մեկի հետ։

— Ա՛յ քեզ հանելուկ… Ես այսօր տանիք չեմ բարձրացել… Բայց տեսնո՞ւմ եք, ամբողջ ձյունը մաքրված է, այս ո՞վ է մաքրել…

Թե այնուհետև ինչ խոսեցին նրանք, չլսեցինք, որովհետև մենք արդեն դուրս էինք եկել մեր թաքստոցից ու գլխապատառ վազում էինք դպրոց տանող ճանապարհով։

Հաջորդ օրը գյուղում բոլորը խոսում էին այդ մասին։ Իսկ դպրոցի աշակերտները իրենց հարցերով հանգիստ չէին տալիս ընկեր Մարությանին։ Նա համբերությամբ պատասխանում էր բոլորին և վերջում ավելացնում.



— Թե ովքեր են այդ մարդիկ, ես չգիտեմ, բայց որ նրանք ազնիվ աշխատանք են կատարում, ես համոզված եմ… Ինձ միայն զարմացնում է մի բան, թե ինչո՞ւ նրանք այդ ամենը գաղտնի են անում։

## ՔԱՆԴՎԱԾ ՑԱՆԿԱՊԱՏԸ

Եկավ գարունը։ Արտերում նորից հնչեցին տրակտորները։ Սառած, կարծրացած հողը կրկին փխրեց ու փափկացավ։ Նրա թարմ բույրը տարածվեց ամենուրեք։ Արևի տաք ճառագայթները հալեցրին արտերում տեղ-տեղ մնացած ձյունը, որի տակից երևացին աշնանացան ցորենի կանաչ ծիլերը։ Գոմերի փակված դռները լայն բացվեցին։ Ուրախ մայունով ու բառաչյունով դուրս եկան ոչխարներն ու կովերը։

Մի առավոտ, երբ ես բացեցի մեր լուսամուտի փակված փեղկերը, ուրախությունից քիչ մնաց ճչայի։ Լուսամուտի տակ գտնվող ծիրանին արձակել էր իր առաջին ծաղիկները։

Վաղվանից սկսվում էին մեր գարնանային արձակուրդները։ Դրա համար դասերից հետո մեր բուսաբանության ուսուցիչը բոլորիս հավաքեց բակում և մատնացույց անելով դպրոցամերձ այգին, ասաց.

— Երեխանե՛ր, ապա մի նայեք, թե ինչպես է փթթել մեր այգին։ Այս տարի մենք պետք է մասնակցենք գյուղատնտեսական ցուցահանդեսին։ Դրա համար հարկավոր է եռանդուն աշխատել, հարստացնել մեր այգին բազմատեսակ ծառերով։ Վաղվանից մենք կսկսենք ծառատունկը։ Ով կարող է, թող իր հետ մատղաշ տնկիներ բերի։

Ես, Վարդգեսն ու Արամը դպրոցից տուն էինք դառնում։ Արամենց կողքի բակից ինչ-որ վիճաբանություններ լսելով, կանգ առանք։ Դրանք սայլապան Հարութն ու Օհան ամին էին։

— Ա՛յ Հարութ, էս անտեր չափարը ինչի՞ չես սարքում։ Հերիք չի՞ հավ ու ճիվը բաղչիս կանաչին փչացնեն…

— Բա ես ժամանակ ունե՞մ։ Առավոտից իրիկուն աշխատում եմ, համ էլ քանդված չափարը մենակ հո իմը չի, քոնն էլ է, չէ՞…

— Իմ կռներում բա ուժ կա՞, որ ես չափար

սարքեմ,— վրդովված ասաց Օհան ամին և ձեռքը թափ տալով գնաց տուն։

Մենք որոշեցինք մի քանի հատ տախտակ ճարել և գաղտնի վերանորոգել քանդված ցանկապատը։ Մեր որոշումը հայտնեցինք խմբի մյուս անդամներին։

Մյուս օրը առավոտը շուտ, հետաքրքրությունից դրդված գնացինք Արամենց տուն։ Արամենց պատշգամբից պարզ երևում էր վերանորոգված ցանկապատը։ Կանգնել ենք պատշգամբում և անհամբեր սպասում ենք, թե ինչ է լինելու։

Քիչ հետո բակ դուրս եկավ Օհան ամին։ Տեսնելով վերանորոգված ցանկապատը, գոհունակ ժպտաց և ձայն տվեց իր հարևանին։

Սայլապան Հարութը դուրս եկավ։

— Ի՞նչ կա, Օհան ամի...

— Շնորհքդ շատ լինի, ա՛յ Հարութ, էլ ի՞նչ պիտի լինի։ Անհագին ջանք ես թափել և ձեն չես հանում, որ մի շնորհակալություն էլ հայտնենք...

Սայլապան Հարութը հանկարծ նկատեց ցանկապատը և շփոթված ասաց.

— Վա՜յ, Օհան ամի, դու ինձ ամոթով թողիր։ Քո էդ հալիվոր տեղով չարչարվել, չափարը սարքել ես ու հիմա էլ ինձ ամոթանք ես տալի... Իրավունք ունես, ախպեր...

Օհան ամին նրա խոսքերից ոչինչ չհասկանալով, մերթ նայում էր ցանկապատին, մերթ էլ հարևանի շփոթված դեմքին։

— Ա՛յ Հարութ, էս չափարը ուրեմն դու չե՞ս սարքել...

— Չէ, Օհան ամի, չէ...

Մինչ Օհան ամին և սայլապան Հարութը կպարզեին այդ «հրաշքը», մենք պատշգամբում կանգնած ծիծաղից թուլանում էինք։

Եվ այսպես, օրերն անցնում էին իրար ետևից, իսկ մեր աշխատանքները՝ ավելանում։ Գյուղի տղաները նույնիսկ սկսեցին առասպելներ հորինել մեր մասին։ Իսկ Վահանն այս ամենից ոգեվորված, ամեն անգամ ինձ հանդիպելիս կրկնում էր.

— Ասում էի, չէ՜... ասում էի, չէ՜, իսկ դու չէիր հավատում։

## ԳԻՇԵՐԸ ՑՈՒՐՏ Է ԼԻՆԵԼՈՒ

Մի օր ուշ երեկոյան, երբ ես անկողնում պառկած գիրք էի կարդում, դրսից ուժեղ սուլոց լսեցի։ Սուլոցը կրկնվեց մի քանի անգամ։ «Մերոնք են» մտածեցի ես և շտապով ցած թռա անկողնուց։ Սկսեցի արագ հագնվել։ Այդ միջոցին լուսամուտը կամաց տկտկացրին։ Որպեսզի տանեցիք չարթնանան, իսկույն բացեցի լուսամուտի փեղկերը՝ գլուխս դուրս հանեցի։ Դրսում մութ էր. այդ պատճառով էլ ոչինչ չտեսա։ Այն է, ուզում էի գլուխս ներս քաշել, երբ մեկը մթության միջից կամացուկ շշնջաց.

— Վազգե՛ն, ա՛յ Վազգեն, դուրս արի՝ կարևոր բան կա հայտնելու

— Ո՞վ է,— հարցրի ես։

— Դու էլ ժամանակ ես գտել հարցնելու, ե՛ս եմ՝ Վահանը։

Եվ ճիշտ որ, ձայնը Վահանինն էր։

— Սպասիր, գալիս եմ,— պատասխանեցի ես և ոտքի ծայրերի վրա զգույշ դուրս եկա տանից։ Բակում կանգնել էր Վահանը՝ արջի նման բրդոտ քուրքի մեջ պարուրված։



— Այս տաք եղանակին ինչո՞ւ ես հագել քուրքը,— զարմացած հարցրի ես։

— Ամբողջ գյուղը գիտի, իսկ դու, ի՞նչ է, քնել ես ուղտի ականջո՞ւմ։

— Ինչը՞, քուրքիդ մասի՞ն։

Վահանն այս հարցիս վրա ծիծաղեց և ապա ասաց.

— Ուրեմն դու ոչինչ չգիտես... Քիչ առաջ ռադիոն հաղորդեց, որ այսօր գիշերը սաստիկ ցուրտ է լինելու։ Դրա համար հարկավոր է միջոցներ ձեռք առնել ծառապտուղը ցրտահարվելուց փրկելու համար։ Բոլորը գնում են կոլտնտեսության այգիները ծուխ տալու, իսկ մենք...

— Իսկ մենք, ի՞նչ պետք է անենք,— ընդհատեցի Վահանին։

— Մենք էլ ծուխ կտանք մեր դպրոցամերձ այգին և այն ընտանիքների տնամերձ այգիները, որոնք այդ մասին հոգ տանող չունեն։ Ա՛յ, օրինակի համար, մեր դասարանի Համբիկենց այգին։ Նրա հայրը կարևոր գործով քաղաք է գնացել, իսկ մայրն էլ հիվանդ պառկած է...

— Որ այդպես է, հարկավոր է հայտնել տղաներին,— անհանգիստ ասացի ես։

— Տղաներին կանչելու հարկ չկա, նրանք դըրսում կանգնած քեզ են սպասում։

Ես շտապ տուն մտա, վերցրի վերարկուս և, այն է, պատրաստվում էի դուրս գալ, երբ ետևից լսեցի հորս ձայնը.

— Այդ ո՞ւր...

Հանկարծակիի գալով շուռ եկա։ Հայրս վեր էր կացել անկողնուց և հագնվում էր։ Չիմանալով ինչ պատասխանել, մի կերպ կմկմացի.

— Ես, հայրի՛կ,... հենց այնպես... օդափոխվելու համար...

— Օդափոխվելո՞ւ... դու իմ գլխին օյիններ մի սարքի, հանիր շորերդ ու քնիր,— բարկացավ հայրս ու դուրս գնաց։ Ես լսեցի, թե ինչպես բանալին չրխկաց դռան փակիչի անցքում ու հետո ամեն ինչ հանդարտվեց։ Հայրս իմ վրա փակեց դուռը և գնաց։ Ես զգույշ բացեցի լուսամուտի փեղկերը և դուրս ծլկեցի։ Եղանակը սկսել էր ցրտել։ Տղաները մեր բակի դռան մոտ կանգնած սպասում էին։

— Ինչո՞ւ ուշացար, թեյո՞ւմ էիր, ինչ է,— խսկույն վրա տվեց Արամը։

Տղաներին պատմեցի իմ «Թակարդ» ընկնելու մասին։ Վահանն ասաց.

— Դե լավ, գոմաղբ տեղափոխելու համար ձեր տանից մի քանի հատ դույլ վերցրու։

Ես իսկույն ներքնահարկ իջա, վերցրի դույլերը և վազեցի տղաների մոտ։ Մենք դույլերը լցրինք չորացած գոմաղբով և մի քանի հնացած լաթի կտորներ ճարեցինք, մի քիչ էլ նավթ՝ գոմաղբը վառելու համար։

Ցուրտը գնալով սաստկանում էր։ Սառը քամին փչում էր կատաղորեն։ Ճանապարհի երկարությամբ ձգվող հեռագրասյուների էլեկտրալարերը նվում էին կատվի նման։ Հեռվից լսվում էր կոլտնտեսության այգիները շտապող մարդկանց աղմուկն ու աղաղակը։ Մենք հասանք Համբիկենց այգին։ Այգու ծայրերին չորացած գոմաղբից ձագարաձև փոքրիկ բուրգեր սարքեցինք։ Տակից ու վերևից անցքերը բաց արինք և լաթերը նավթոտելով դրեցինք անցքերի մեջ։ Լաթերը բոցավառվեցին, և ծուխը գալարվելով տարածվեց այգու վրա։

— Ամբողջ գիշերը գոմաղբը այսպես կմխա և տաք ծուխը ծառապտուղը ցրտահարվելուց կըպահպանի,— ասաց Վահանը։

Մենք դուրս եկանք Համբիկենց այգուց։ Կոլտնտեսության այգիներից հսկայական քուլաներով ծուխ էր բարձրանում։ Ամբողջ գյուղը թաղվել էր ծխի մշուշի մեջ։

Մենք բաժանվեցինք երկու խմբի։ Ես, Վահանն ու Արամը գնացինք դպրոցամերձ այգին, իսկ Մուկուչն ու մյուս տղաները գնացին տնամերձ այգիները։ Մենք դպրոցամերձ այգում նույնպես չորացած գոմաղբի բուրգեր սարքեցինք։ Նավթոտ շորերը բոցավառելու վրա էինք, երբ Վահանը ճչաց.

— Փախեք, տղանե՛ր, մարդիկ են գալիս...

Իրոք, որ հեռվից երևաց մեր բուսաբանության ուսուցիչը՝ մի քանի աշակերտների հետ։ Մենք շտապ վերցրինք դույլերը և ծլկեցինք այդտեղից։

Գործը լրիվ վերջացնելուց հետո՝ բոլորս հոգնած ու թուլացած վերադարձանք տուն։

Մյուս օրը իմացանք, որ Վահանը գիշերը մըրսել ու անկողին է ընկել։

Այդ օրվանից սկսած ամեն օր տղաներով գընում էինք մեր «կոմիսարին» տեսության։

Մի օր էլ, երբ սովորականի նման նրանց տուն գնացինք, տեսանք, որ Վահանը վերմակը գլխին քաշած պաշտպանվում էր մոր հանդիմանությունների անվերջանալի «գնդակոծումից»։

— Այս քանի օր է տաքության մեջ այրվում է, մի հարցնող չինի, ինչի՞ համար,— վրդովված ասաց մայրը։ Հենց այդ պահին, սենյակի դռները չրխկոցով բացվեցին և հևասպառ ներս ընկավ չեկլիկ Սարգիսը։

— Տղանե՛ր, մենք մատնված ենք։ Բոլորն արդեն գիտեն մեր մասին։ Ահա ապացույցը,— հուզ-

*ված ասաց Սարգիսը և ձեռքի ամսագիրը մեկնեց Վահանին։ Մենք ոչինչ չհասկանալով՝ շփոթված նայեցինք միմյանց։*

*Վահանը բարձրաձայն սկսեց կարդալ «Պիոներ» ամսագրում տպագրված այս ամբողջ պատմությունը։ Կարդալուց հետո նա ասաց.*

*— Ա՛յ քեզ զարմանալի բա՞ն, մենք ոչ ոքի ոչինչ չենք ասել, բայց որտեղի՞ց են իմացել այս ամենը։*

*Այստեղ ես հանկարծ հիշեցի, թե ինչպես Վահանի հիվանդանալուց մի օր հետո, այս ամբողջ պատմությունը պատմեցի՝ քաղաքից մեր տունը եկած հյուրին...*

*Իմ խոստովանությունից հետո Վահանը հանդիսավոր ձևով ասաց.*

*— Դե, տղե՛րք, ինձ թվում է, որ մենք սրանից հետո ավելի ոգևորված պետք է աշխատենք։ Օրեցօր մեր խմբի անդամները կավելանան։ Եվ կգա մի օր, մեր թիվը կհասնի հարյուր հազարների...*

*Վահանը դեռ չէր վերջացրել խոսքը, երբ սենյակի դուռը կամաց ճռռաց, ու ներս ցցվեցին Արշակի ու Վաղարշակի գլուխները։ Նրանք շփոթված նայեցին մեզ, հետո՝ միմյանց, ապա հազիվ լսելի ձայնով հարցրին.*

*— Կարելի՞ է...*

*— Ներս եկեք, ներս եկեք, տղե՛րք,— մտերմորեն ասաց Վահանը։*

*Մենք ուրախությունից գրկախառնվեցինք, իսկ Վահանի մայրը ժպտում էր... Ժպտում էր գոհ ու երջանիկ։*



# ԶԱՆԳՎԻ ԱՓԻՆ

*Վ. ԿԱՐԵՆՑ*

Այրում է արևը,
Արևը անշեջ,
Երգում են ջրերը,
Կանչում են անվերջ։
Ու ձորն են լցվում
Մանուկներն ահա.
Լողում, լվացվում
Գետի մեջ զուլալ։
Թփից-թուփ թռչում,
Պառկում ավազին,
Վազում են, կանչում,
— Կարող ես՝ հասի՛ր։
Եվ այսպես ուրախ,
Եվ այսպես թովիչ,



*Նկ. Հ. ՍԻՐԱՎՅԱՆԻ*

Թե մանկան ծիծաղ,
Թե գետի քրքիչ.
Իրար հետ հյուսվում
Զնգում են անվերջ.
Արևն է այրում,
Արևը անշեջ։
Ձեզ համար է այս
Ձորը կանաչում,
Ձեզ համար են պարզ
Ջրերը կանչում,
Որ խաղաղ ապրեք
Այս արևի տակ,
Մեր կյանքի ծիլեր,
Մանուկներ կայտառ։

# ԴԵՊԻ ՃԱՄԲԱՐ

Ռ. ՂԱՐԻԲՅԱՆ

Նկ. Մ. ՍՈՍՈՅԱՆԻ



Ժիր մանուկներ, եկեք ինձ հետ,
Ամռան շոգից ձեզ հանեմ,
Ցողաշաղախ ու սիզավետ
Բնության գիրկը տանեմ:
Հաղթանակով փակել եք դուք
Ուսումնական ձեր տարին,
Ի՞նչ եք նստել լուռ, անաղմուկ՝
Ամռան տանջող շոգերին:
Եկեք տանեմ մեր դաշտերը,
Մեր սարերը լայնալանջ,
Աղմկալից խոր ձորերը,
Անտառները մեր կանաչ,



Ուր հովը մեղմ շնկշնկալով
Անուշ շվի է փչում,
Ուր թիթեռը թևին տալով
Ծաղկից ծաղիկ է թռչում:
Ուր որ ամեն մի թփի տակ
Մի աղբյուր է կարկաչում,
Ամեն ձորում մի պաղ վտակ,
Մի գետակ է ձեզ կանչում...
Եկեք տանեմ, մաքուր օդում,
Ծաղկունքի հետ խաղացեք,
Զինջ ջրերի ժիր պտույտում
Ձկների պես լողացեք.

Արևի հետ ելեք, շրջեք
Զով վայրերը ձեր սիրած,
Հովերի հետ ճամբարն իջեք,
Կակաչի պես կարմրած.
Եկեք տանեմ, վրան զարկեք
Բնության մեջ գեղանիստ,
Թռվռացեք, պարե՛ք, երգե՛ք
Զեփյուռի հետ անհանգիստ.
Խարույկ վառեք խաղաղ փռված
Անտառների փեշերին,
Թող կայծերը երկինք թռած՝
Հասնեն պայծառ աստղերին.

Թող փողփողա դրոշը ձեր
Բարձունքներում անառիկ,
Ինչպես վաղվա երջանկաբեր
Լույս ապագան ձեր գալիք:
Որպես ուրախ կյանքի նոր կոչ
Շեփորն անուշ թող հնչի,
Եվ ձեր երգը մշտախոխոջ
Աղբյուրի պես կարկաչի...





# ԸՆԿԵՐՆԵՐԸ

Պ. ԶԵՅԹՈՒՆՑՅԱՆ

Նկ. Տ. ԹՈՔՄԱՋՅԱՆԻ

Դաշտը հրապուրիչ նաղանքով տարածվել էր լեռան ստորոտին և ձգվել հեռու։ Կապուտակ երկնքում լողում էր ամպիկների մի փոքրիկ երամ։ Տոթ էր։ Վտիտ ուղտափշերի հոծ խմբերը խճճված միրուքի պես նայում էին վեր, կարծես ջուր էին խնդրում։ Փշերի միջով քայլում էին երեք տղա։

Դեռ քիչ առաջ Արամը և Պետյան տարբեր կողմերից միաժամանակ կրակել էին կաքավի վրա ու չէին իմացել, թե ում գնդակից է կաքավը ընկել։ Վիճել էին ու գժտվել։ Իսկ Լևիկը շատ հանգիստ ձեռքը գցել էր կաքավին ու դրել տոպրակը։

Նա քայլում էր տղաների մեջտեղով և իրեն հպարտ էր զգում, որ մի տեսակ «չեզոք գոտի» էր դարձել։ Նրա աչքերը այնպես էին փայլում, կարծես ուզում էին ասել, թե Արամի և Պետյայի հաշտությունը կախված է միայն իրենից։ Նա գոհունակությամբ էր նայում բարկացած ընկերներին. «Իսկ ինչո՞ւ նրանք մինչև հիմա չէին գժտվում,— մտածում էր Լևիկը։ Հաճելի է տեսնել, որ կողքիդ քայլում են երկու խռոված մարդիկ, իսկ դու երկուսի հետ էլ խոսում ես»։ Լևիկը ժպտաց մեծ ժպիտով։

Հանկարծ Պետյան նրան հարցրեց.

— Դու լողալ գիտե՞ս…

— Գիտեմ։

Լևիկը ուրախ, որ արդեն իրենով հետաքրքրվում են, սկսեց պատմել, թե ինքն ինչպես է լողում, բայց նկատեց, որ Պետյան չէր լսում իրեն, այլ ցրված ինչ-որ բան էր մտածում։ Նա բարկացած շրջվեց Արամի կողմը։ Սակայն Արամն էլ տարօրինակ դեմք ուներ։ Լևիկը վախեցավ նրա հետ խոսել և հուսահատ գլուխը կախեց։

Նրանք իրենց ճանապարհը թեքեցին դեպի ձորակը։ Առաջ, երբ Պետյան ու Արամը կողք-կողքի քայլում էին, անխոս կռահում էին միմյանց մտքերը։ Գեղեցիկ ձորակը թույլ չէր տալիս խոսել։ Նրա երկու կողմերում շարվել էին ծառերն ու կանաչ գծեր քաշել վերևում։ Ներքևում ժայռերն էին, որ թաղված էին առավոտյան մշուշի մեջ։ Բայց այսօր ամեն ինչ ձանձրալի էր, և նրանք չէին կարողանում իրար հասկանալ։

Միայն Լևիկն էր անհոգ սուլում։ Մեկ-մեկ նա էլ էր տխրում. ախր ինչո՞ւ Արամն ու Պետյան չդնսեցին իրար։ Եվ որոշեց բոլորին պատմել, թե նրանք ինչպես գժտվեցին, նույնիսկ առանց կռվի փորձ անելու։ Նա հառաչեց, կարծես մի մեծ բան էր կորցրել։ Արամը ինչ-որ բան հիշեց և ասաց.

— Դու ախր լողալ չգիտեիր։

Լևիկը այդպիսի հարցի չէր սպասում։ Իսկ Արամը շատ վիրավորված դեմք ուներ, կարծես իրեն էին խաբել։

Պետյան քաշեց Լևիկի թևը։

— Ինչո՞ւ ես խաբում։

— Չեմ խաբում, ազնիվ խոսք…

— Խաբում ես,— ասաց Արամն ու խստությամբ նայեց Լևիկին։

— Իսկի էլ չգիտես,— համոզված հաստատեց Պետյան։

Լևիկը կարմրեց։ Նա սպառնագին նայեց նրանց, բայց և զարմացավ. նրանք ինչո՞ւ էին իրար պաշտպանում. դա վատ նշան էր…

Նա ճգնեց սիրալիր երևալ։ Արամը և Պետյան մտերիմ ընկերներ էին ու առաջ իրեն չէին սիրում։ Լևիկը չէր հասկանում, թե ինչու։ Իսկ հիմա անպայման երկուսին էլ սիրելի կլինի։ Նա հրճվանքով սրբեց մեծ քիթը և սիրալիր երևալու համար ժպտաց մի տարօրինակ ժպիտով։

Պետյան ինչ-որ վալս էր սուլում։ Արամը հիշեց, որ ինքը հաճախ Պետյայի մոտ գովել է այդ վալսը։ Նա հաճույքով ականջ դրեց ու մի պահ ամեն ինչ մոռացած ինքն էլ սկսեց սուլել։ Լևիկը զարմացած նրանց էր նայում։ Անգործ չմնալու համար նա նույնպես մասնակցեց, սակայն տղաները դադարեցին սուլել և չգիտես ինչու բարկացան, որ Լևիկը խանգարեց իրենց։ Այժմ Լևիկը միայնակ էր սուլում։

— Ի՞նչ եք գլուխ տանում,— հանկարծ լացակումած գոռաց նա, առանց գլխի ընկնելու, որ միայն ինքն է աղմկում։

Պետյան էլ գոռաց.

— Դու լռի՛ր։

Արամը կրկնեց.

— Սո՛ւս մնա։

Լևիկը սսկվեց. մի պահ վախեցավ, որ Արամն ու Պետյան կծեծեն իրեն, սակայն անմիջապես հիշեց նրանց գժտված լինելն ու հանգստացավ։ Նա նորից ժպտաց ու իրեն զգաց մի քիչ ուժեղացած…

Պետյան ուշ գլխի ընկավ, որ ինքնաբերաբար



սուլեց Արամի սիրած երգն ու զարմացավ։ Ուզեց ցույց տալ, հասկացնել, թե դա իրենից անկախ կատարվեց։ Նա մտածեց, ինչպես անել այդ և սկսեց սուլել այն երգը, որ Արամը չէր սիրում։

Արամը իսկապես շփոթվեց, բայց բոլորովին անսպասելի լսեց իր վալսը։ Պետյան նույնպես շփոթվեց։ Այդ ինչպե՞ս եղավ...

Իսկ Լևիկը հետաքրքրությամբ հետևում էր նրանց և գուշակություններ էր անում։

Պետյան այնուամենայնիվ իրեն պարտված էր զգում։ Չլինի՞ Արամը մտածի, որ նա փոշմանել է արածի համար։

Նա կեղծ սիրալիրությամբ ասաց Լևիկին.

— Դու ինչո՞ւ մեզ մոտ չես գալիս շախմատ խաղալու։

Լևիկի աչքերը փայլեցին։ Եվ նա նորից ժպտաց։։

— Կգամ... Ես չգիտեի, որ խաղում եք։

— Ե՞րբ կգաս,— անտարբեր և սառը հարցրեց Պետյան։

— Վաղը։

Արամը չէր սպասում, որ Պետյան Լևիկի հետ այդպես քաղցր կխոսի։ Չնայած նրանք այնքան էլ քաղցր չէին խոսում, բայց Արամին այդպես էր թվում։ Նա պարզապես խանդում էր...

Դա բավական էր, որ պայքար սկսվեր, թե ով ավելի կխոսի Լևիկի հետ, ով ավելի շատ կզբաղեցնի նրան, կամ նա ո՞ւմ ավելի ուշադիր կլսի։ Ամեն մեկն սկսեց մի բան առաջարկել։

— Լևիկ, վաղն արի հեծանիվ քշենք,— ասաց Արամը։

— Չեմ կարող։ Վաղը Պետյայի հետ շախմատ ենք խաղում։

— Վաղը գալու եմ, հա՞, կրկին հիշեցրեց Պետյան։

Լռություն տիրեց։ Արամը նորից ասաց.

— Լավ, մյուս օրն արի։

— Լսի՛ր, մյուս օրն էլ շախմատ չխաղա՞նք,— քարկությամբ ընդհատեց Պետյան, չնայած շատ հանգիստ էր ձևանում։



Լևիկն սկսեց գլուխը քորել։

Նա վախից չուզեց ոչ մեկին նեղացնել։ Միայն ասաց.

— Մյուս օրը քեռուս մոտ եմ գնում։

Նա հազիվ էր զսպում իրեն, որ չթռչկոտի. զգում էր, որ մեծ, կարևոր անձնավորություն դարձավ. ուրախությունից պատրաստ էր նույնիսկ նրանց հաշտեցնել։ Բայց այդ միտքը նա մի կողմ վանեց. չէ՞ որ եթե նրանք չգժտվեն, ապա ինքը նորից նրանց հետևից պիտի քարշ գա։

Պետյան անտարբեր էր ձևանում ու աչքի տակով նայում էր Արամին։ Նա շատ ուրախացավ, երբ Արամը հարցրեց.

— Լևիկ, ուրեմն մյուս օրը չե՞ս գա։

— Չե՛մ գա։

— Մի՛ արի,— ասաց Արամն այնպես, կարծես ուզում էր իրեն մխիթարել։

Պետյան հանկարծ խղճաց նրան... Նա նույնիսկ խղճի խայթ զգաց, որ այդպես անողոք կերպով առել էր Լևիկի համաձայնությունը։ Արամը երևի մտածում էր, որ վաղը մենակ է մնալու, մինչդեռ պայմանավորվել էին կինո գնալ։ Իսկ մի

*ուրիշ օր, եթե Լևիկը համաձայնվի Արամի հետ, Պետյան կմնա և այս անգամ էլ գուցե նրան խղճան... Նա անսպասելիորեն ասաց.*

*— Լևի՛կ, վաղը չգաս շախմատի...*

*Գետակի ափին նրանք կանգ առան: Ջրի մեջ Պետյան տեսավ Արամի դեմքը: Երկուսն էլ շփոթվեցին: Բայց չէին ուզում դեմքերը շուռ տալ: Լևիկն աշխատեց նրանց զբաղեցնել: Նա ինչ-որ բանից վախենում էր: Պետյան ուրախացավ: Արամը ժպտում էր: Սակայն բոլորովին անտեղի, նա մտածեց շարունակել իր անտարբեր շարժ ու ձևը: Բայց ինչ-որ բան Պետյային նույնպես ստիպեց ժպտալ:*

*Քիչ անց խարույկի բոցը լիզում էր օդը: Նրա վրա տապակվում էր կաքավը, որ վերցրել էին Լևիկից:*

*Նրանցից հեռու հուսահատ նստել էր Լևիկը և անընդհատ մեծ քիթը սրբելով ինչ-որ բան էր մրթմրթում: Այդ օրը նա ոչինչ չկերավ:*



# ԼԱՎԱԳՈՒՅՆ ՆՎԵՐ

Վ. ՆՈՐԵՆՑ

Նկ. Ա. ԶԱՔԱՐՅԱՆԻ



Հինգ տարեկան մի բալիկ
Լաց է լինում ամեն օր,
Էլ չի ուզում խաղալիք,
Ինչ-որ բան է ուզում նոր:

Էլ չի ուզում խաղ ու միրգ.
Մայրիկն ի՞նչ տա իր մանկան...
Տալիս է մի սիրուն գիրք,
Այբուբենը հայկական:

Եվ մանկիկը երջանիկ՝
Ընդունում է այն սիրով...
Ա՜խ, իմ բալիկ, իմ ջանիկ,
Դո՞ւ ես այդ նոր նվերով:

Բայց դրանից լավ նվեր,
Դրանից լավ ո՛չ մի բան,
Դեռ ոչ մի մայր չի տվել
Աշխարհի մեջ իր մանկան:

# ՈՒՇԱՑԱԾ ՀՆՁՎՈՐԸ

Վ. ՏԱԼՅԱՆ

Նկ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

Ասում են, որ մի ժամանակ գյուղերից մեկում մի անհոգ մարդ էր ապրում. այնքան անհոգ ու անփույթ, որ հարևանները շատ անգամ ծիծաղելով ասում էին.

— Աշխարհք վառվի, սրա մի խորոմ խոտը չի վառվի։ Դրա համար էլ նրա անունը Դինջ էին դրել։ Իսկական անունն Առաքել էր. բայց ո՞վ էր նրան իսկական անունով կանչում որ... Դինջը եկավ, Դինջը գնաց, Դինջը ասաց։ Այսպես էին խոսում մարդիկ նրա մասին։

Մի տարի էլ այդ Դինջը մի լավ տեղ ցորեն է ցանում։ Եղանակն էլ այնքան տեղը տեղին է լինում, որ բոլորն ասում են, թե Դինջ Առաքելը մեզանից կանցնի։ Դե, եղանակս ո՞րն է. ձյունը ժամանակին, անձրևը ժամանակին, հովն ու զովն իր տեղը, արևն ու ամպն իր տեղը, ջուրն անպակաս, հուրն անվնաս։

Անցնում են օրեր։ Դինջ Առաքելի արտը հասնում, գարնան արևոտ օրերին զմրուխտի պես շողշողում, խաղում է հովի հետ ու մարդկանց զարմացնում, իսկ ամռանն այնպես է փայլում, որ ասես թե ոսկի են շաղ տվել վրան. ծփում է, շորորում, հորանից դնում։



Արտը հասնում է, հասկերն իրար դիպչելիս ղնգում են, հնձվոր կանչում, իսկ Դինջ Առաքելը չի էլ մտածում, որ հնձելու, ոսկին տուն տանելու ժամանակն է։ Այս գյուղում է օրն անցկացնում, այն գյուղում է քեֆ անում, այս բարեկամի հացին է հասնում, այն ծանոթի հացին... Ժամանակն այնպես է թռչում, որ թևեր էլ ունենաս՝ ետևից չես հասնի։ Է, Դինջ Առաքելին ի՞նչ. ոտքը գերանդուն էլ է դեմ առնում, էլի նա անհոգ ուտում-խմում, ման է գալիս։ Դե, ամռան օրեր... ծիլ ու ծաղիկը՝ շատ, միրգն ու բանջարեղենն՝ առատ. էլ ի՞նչ պիտի հիշեր, թե հասած, ոտից գլուխ դեղին շորեր հագած արտը կանգնած տեղը դանդաղում է, թնկթնկում։

— Լա՛վ, բա ոչ ոք դրան գլխի չէ՞ր գցում, որ գերանդու բերանը ժանգը կերավ, հեսանը փոշու մեջ կորավ. գործ են ուզում դրանք, բան ու գործ։ Ո՞նց չէ, շատերն էին ասում.

— Ա՛յ Դինջ, արտդ հասել է, ե՞րբ ես հնձելու։

Դինջ Առաքելը թազբեհի հատերը չխկացնելով պատասխանում էր.

— Է՛հ, մի օր կհնձեմ էլի։

Մարդիկ գլուխները տարուբերում էին ու լռում։

Հո չէին կարող գործները թողած՝ Դինչ առաքելի գործի հետևից ընկնել։

Առաքելն անհոգ էր, բայց ամառն անհոգ չէր. նա իր անելիքը լավ ու ժամանակին էլ կատարում էր։ Անձրև էր բերում, արև էր անում։ Որտեղ պետք էր, նորից կանաչեցնում էր, որտեղ պետք չէր՝ ոսկեվորում էր, որտեղ պետք էր՝ սերմ էր ցանում, որտեղ հարկավոր էր՝ ծաղիկ բացնում։

Այսպես, ամռան պարզ ու տաք օրերն անցան, եկավ հասավ օգոստոսի վերջը։

Մի օր էլ Դինչ Առաքելը բարձրացավ հանդամիջի բլուրն ու այնտեղից նայեց տեսավ, որ ինչքան արտ կա՝ հնձված են. տեղները խոզանն է ցից-ցից ու տեղ կա՝ խիտ, տեղ կա՝ նոսր։ Մնացել է միայն իր արտը՝ չորացած, կծղած։ Արտի վրա էլ այնքան թռչուն է պտտվում, որ հաշիվ չկա. մի երամը դուրս է թռչում արտի միջից, մյուսը նոր է ամպի նման իջնում։

Տեսավ Դինչ Առաքելը. նստեց մի քարի ու մտքի մեջ ընկավ, թե այս մարդիկ ե՞րբ հնձեցին իրենց արտերը։ Միտք արեց, միտք, վազեց տուն, փերանդին ուսին դրեց, հեսանը՝ գրպանը, ինչ որ պետք էր վերցրեց ու հանդի ճամփան բռնեց։

Գնում է Դինչ Առաքելն ու մտածում. «Լավ ժամանակին հասա, հա՜. թե չէ բերքս կորչելու էր»։ Գնում է, գնում, հեւհեւ բարձրանում բլուրն ու կանգ է առնում, որ շունչ քաշի։ Այդ ժամանակ դեմ են գալիս հոգնած ու դադրած գյուղացիները։ Հոգնած, բայց խիղճները հանգիստ, որ իրենց գործը կատարել են ու էլ ոչ երաշտը վնաս կտա, ոչ կարկուտը, ոչ էլ մի ուրիշ աղետ։

Տեսնում են նրանք քրտնամխած Դինչին ու հարցնում.

— Ինչո՞ւ ես վազում, այ մարդ, ի՞նչ է եղել։

— Ի՞նչ պիտի լինի, գործի եմ գնում։

Ասում է ու քայլերն արագացնում։ Գյուղացիները մի քիչ կանգնում են, նայում նրա հետևից, քահ-քահ ծիծաղում ու շարունակում իրենց ճանապարհը։

Դինչ Առաքելը մոտեցած է լինում իր կծղած, հասկերը դատարկ, ոսկեհատ ցորենը հողին թափած արտին, երբ վերջին սայլվորները հանդիպում են նրան ու հարցնում.

— Ա՛յ Դինչ, ինչո՞ւ ես վազում, ո՞ւր ես շտապում։

— Է՜, գլուխս ցավացրիք դուք էլ. քանի՞ անգամ ասեմ... Տո՛, չե՞ք տեսնում, որ գնում եմ հանդը։

Գյուղացիները տեսնում են, որ շտապելուց մարդու շունչը տեղը չի գալիս, ասում են.

— Այս ժամանակ հանդում ի՞նչ գործ ունես, ա՛յ մարդ. էս է իրիկուն է դառնում։

— Ո՞նց թե... գնամ արտս հնձեմ, քանի ուշ չէ... Չորացավ թափվեց է՛...

Այս ասելով Դինչ Առաքելն շտապում է արտն ու սկսում հունձը։ Բայց ի՞նչ օգուտ՝ հնձած-չհընձած մեկ է։

Այսպես է, էլի՛, ուշացած հնձվորի բանը...



# ՏՐԱՄՎԱՅ

Ս. ԽԱՐԱԶՅԱՆ

— Վա՛յ, վա՛յ, տրամվայ,
Ո՞ւր ես գնում զնգալով,
Կանգնիր այստեղ դու մի պահ,
Նստենք ես ու մեր Գալոն։
— Ո՛չ, չեմ լսի խոսքը ձեր,
Ես կարգը չեմ խանգարում,
Ինձ կարող եք, մանուկներ,
Նստել միայն կանգառում։
Ես գործ ունեմ, հազար գործ,
Հազար տեղ եմ շտապում,



Մեկին տանում եմ դպրոց,
Մեկին բերում իրենց տուն։
Վազվզում եմ դես ու դեն,
Մարդկանց տանում գործարան,
Կայարանից գալիս եմ,
Էլի գնում կայարան։
Չեմ կատարի խոսքը ձեր,
Իմ կարգը չեմ խանգարում,
Ինձ կարող եք, մանուկներ,
Նստել միայն կանգառում։



# ԳՈՐԾԻ ՀՆԱՐՔԸ

Պ. ԲԱԺՈՎ

Նկ. Պ. ՄԱԼԱՅԱՆԻ

*Էս բանը դեռևս իմ ծերուկներն են ինձ պատմել։ Նշանակում է կարգին ժամանակ է անցել։ Բայց դա պատահել է ճորտատիրական իրավունքից հետո։*

*Էդ տարիներում մեր գործարանում մի մարդ էր ապրում, որին Տիմոխա Կարճաբազուկ էին ասում. էդ մականունը նրան ծեր հասակում էին կպցրել։*

*Իրականում նրա բազուկները լրիվ սարքին էին։ Ինչպես ասում են, աստված թող ամենքին էդ տեսակ բազուկներ տա։ Նրանցով արջի վրա մի թաք դանակով էլ կարող ես գնալ։ Մյուս բաներում էլ թերություն չէր նկատվել—թիկունքը՝ լայն, կուրծքը՝ պինդ, ոտներն՝ հաստատուն, վիզն էլ ոնց որ լծափայտ. իսկի կարո՞ղ ես կռացնել։ Հին ժամանակ տոն օրերին, երբ զանազան խաղեր էին սարքում, էդ տեսակ ուժեղներին էլ իրար դեմ էին հանում։ Դրանք «թրխկացնողներ» էին կոչվում — որտեղ որ թրխկացրին՝ էնտեղ կջարդվի։ Բայց ամենաչալավ կռվողներն էլ անգամ, էդ Տիմոխայից փախս էին տալիս։ Դեռ լավ էր, որ նա դեպի էդ խաղերը էնքան սեր չուներ։ Երևում է, իզուր չի ասված էն խոսքը, թե՝ ով ուժեղ է, խաղաղ է ապրում։ Գործի մեջ Տիմոխայի նմանը չկար, հասկացող տղա էր։ Ցույց տուր ու հեռու կաց՝ իսկույն սովորում էր ու քեզնից էլ վատ չէր անում։*

*Մեր կողմերում դե, հայտնի բան է, ի՞նչ արհեստ ասես, որ չկա։ Մեկն հանքաքար է քանդում, մյուսն էդ հանքաքարը մշակում է, ոսկի ավազ լվանում, հիմնաքար ու հնոցի քար ջարդում, գունավոր մետաղներ հանում, մի ուրիշին էլ, կտեսնեիր, գետում նախշուն քարեր է որոնում*



ու հղկում։ Իսկ փայտ կտրելու և այրելու գործով, կարծում ես, քի՞չ մարդ էր զբաղվում։ Ախր գործարանային աշխատանքում էլ են ածուխ վառում։ Հետո գաղաններ են որսում, ձկնորսությամբ զբաղվում։ Նույնիսկ պատահում է էնպես, որ մի խրճիթում վառարանի մոտ դանակ-պատառաքաղ են նախշում, լուսամուտի մոտ քար են հղկում ու հարթում, իսկ բարձր թախտի վրա կտավ գործում։ Դե, իհարկե, արտ ու անասունից էլ չէին խուսափում. էնտեղ, ուր լեռը մի քիչ թույլ է տալիս, անպայման խոտհարք կամ որևէ ցանք կլիներ։ Մի խոսքով խայտաբղետ գործ է, և էդ ամենին էլ խելք է պետք և էդ բոլորն էլ իրենց հատուկ հնարքն են պահանջում։

Էդ հնարքի մասին հիմա էլ նույնիսկ ոչ բոլորն են խելքով մտածում, իսկ Տիմոխայի հետ, տեսեք, թե ինչ ծիծաղելի բան պատահեց։ Դա լավ օրինակ է ուրիշների համար։

Էդ Տիմոխան, ջահել էր, դրա համար, թե՝ մի ինչ-որ որդ էր բուն դրել գլխում, որոշել էր մեր կողմերի բոլոր արհեստներն իր ձեռքով փորձել և, կարծես մի խելոք բան էր մտածել, դեռ պարծենում էլ էր։

— Բոլոր արհեստներն էլ կսովորեմ ու ամենավերջին կետին էլ կհասնեմ։

Տնեցիներն ու իր հասակակից ընկերները սկսեցին համոզել, թե ախր էդ ինչի՞ նման է. լավ է մի բան իմանաս, բայց լավ իմանաս։ Եվ հետո, ամբողջ կյանքդ էլ չի հերիքի, որ ամեն արհեստ քո ձեռքով փորձես ու սովորես։

Տիմոխան իր ասածին է կանգնում, լեզվին է տալիս ու սկսում հաշվել.

— Անտառապահությամբ անելու՝ երկու ձմեռ, ձուլող դառնալու՝ երկու գարուն, ոսկի որոնող՝ երկու ամառ, հանքափոր՝ մի տարի, գործարանային աշխատանք՝ տաս տարի։ Իսկ հետո գալիս էր ածխագործությունը, հողագործությունը, որսորդությունն ու ձկնորսությունը։ Սրանք ոչինչ, սրանք պարապ վախտի խաղալիք կլինեն։ Իսկ երբ տարիք առնես, էն ժամանակ կարող ես քարերով զբաղվել, կամ թե հրդեհաշեջների մոտ թամբագործ դառնալ, տաք անկյունում նստես, քո չարխը պտտես, կամ ռանդայով ֆոֆռացնես, կամ թե մախաթով քչփորես։

Ծերուկները լսելով, ծիծաղում են ու ասում.

— Դե, մի՛ պարծենա, լողլո՛ղ, առաջուց դեռ ձեռքերդ վարժեցրու։

Բայց Տիմոխան էլի իրեն մեխին է խփում։

— Ամեն ծառ էլ կբարձրանամ և հենց կատարին էլ կմնամ,— գոչում է նա։

Ծերուկները նորից են ուզում նրան ստեցնել՝ այսինքն թե-կատարը շատ անհուսալի չափ է։ Կատար է, մեկ էլ տեսար՝ կարճացավ, դարձավ մեջտեղ և հետո՝ կատարներն էլ տարբեր են լինում, մեկը՝ ցածր, մյուսը՝ բարձր։

Բայց տեսան, որ տղան չի հասկանում, ձեռք քաշեցին։

— Է՛հ,— ասացին,— քո գործն է, հետո մեզ վրա մեղք չանես, թե ժամանակին չզգուշացրինք։

Ահա և Տիմոխան սկսեց արհեստներ փորձել։ Ինքն ուժով տղա, գործին էլ սրտանց կպչող. էդտեսակին ո՞վ չի ուզի։ Անտառ ասես՝ կկտրի ու շուռ կտա, հանքաքար ասես՝ փշուր-փշուր կանի, խնդրեմ։ Նուրբ աշխատանքներ էլ էին տալիս, չէին մերժում, որովհետև հասկացող տղա էր և մատներն էլ ոչ թե փայտի նման էին, այլ կարծես նրանց մեջն էլ խելք կար։

Տիմոխան շատ արհեստներ փորձեց և ոչ մի

տեղ էլ, ոտը քարին չառավ։ Նրա արածը ուրիշների արածից վատ չէր լինում։

Մի արհեստի մեջ հենց որ հասնում էր վարպետի աստիճանի, իսկույն թողնում էր, գնում մի ուրիշ գործում աշակերտ մտնում։ Դա նրան վնաս շատ էր տալիս, բայց համբերում էր, կարծես թե հենց էդպես էլ պետք էր։ Գործարանում նրա բնավորությունը առել էին, երբ նրան հանդիպում էին, կատակով հարցնում էին.

— Դե, ո՞նց է, Տիմոֆեյ Իվանիչ, դեռ փականագո՞րծ ես, թե արդեն հրշեջների մոտ թամբագործ ես դարձել։

Տիմոխան էդ խոսքից չէր նեղանում։ Նրանց կատակին ինքն էլ էր կատակով պատասխանում։

— Թող ժամանակը գա,— ասում է,— մեր ձեռքից ոչ մի արհեստ չի պրծնի։

Հենց էդ տարիներին էր, որ Տիմոխան կնոջը հայտնեց. «Ուզում եմ ածխագործ դառնալ»։ Կինը քիչ մնաց խելքը թռցներ։

— Էդ ի՞նչ ես ասում, ա՛յ մարդ։ Դրանից էլ վատ բան կա՞, տուն ու տեղը մրի մեջ կկորցնես։ Շապիկդ էլ չեմ հասցնի լվանալ։ Ախր, դա ի՞նչ գործ է։ Ի՞նչ կա էդտեղ սովորելու։

Նրա կնիկն, իհարկե, առանց հասկանալու էր էդ բանն ասում։ Հիմիկվա մեր ժամանակներում, երբ ածխի համար հատուկ վառարաններ կան, էդ գործը հեշտ է, իսկ առաջ, երբ ածուխը կիտելով էին այրում, շատ դժվար էր։ Նույնիսկ պատահում էր, որ մեկն իր ամբողջ կյանքը էդ գործի մեջ էր մաշում, բայց չէր կարենում, ո՛նց որ պետքն է, կարգին ածուխ դուրս բերել։ Տանը էդտեսակ մարդու վրա միշտ կմրթմրթային.

— Մեր ապին, աշխատանքի ժամանակ բոլորի հոգին հանում է, չի թողնում շունչ քաշեն, բայց նրա ածուխը միշտ էլ կամ էնքան է վառվում, որ մեռած է դուրս գալիս, կամ էլ՝ մանրուք։ Իսկ հարևանների մոտ՝ հրեն երգում են, բայց նրանց ածուխը զնգզնգում է։ Ոչ շատ վառած , ոչ էլ քիչ, իսկ մանրուքը՝ հեչ, համարյա չկա։

Տիմոխայի կնիկը ինչքան լաց ու կոծ արեց, մարդուն համոզել չկարողացավ։ Միայն թե Տիմոխան հույս տվեց.

— Միգուցե մրոտ մամ գալս երկար չտևի։

Տիմոխան, իհարկե, իր գինը գիտեր։ Երբ արհեստ փոխելու ժամանակն էր գալիս, առաջին հերթին մտածում էր, որ էնտեսակ վարպետի մոտ գնա, որից բան ունենա սովորելու։

Էդ ժամանակ ածխագործների մեջ մեծ անուն ուներ Նեֆեդ պապը։ Նա բոլորից լավ էր ածուխ պատրաստում և նրա ածուխը էդպես էլ կոչվում





էր՝ Նեֆեդովյան ածուխ, որը պահեստում միշտ մի առանձին անկյուն կլցնեին և միայն ամենանուրբ աշխատանքների համար բաց կթողնեին։

Հենց էդ Նեֆեդ պապին էլ Տիմոխան ներկայացավ։ Նա Տիմոխայի հիմարության մասին, իհարկե, գիտեր ու նրա խնդիրը լսելուց հետո, ասաց.

— Աշկերտ ընդունել կարող եմ, ինչ որ գիտեմ, առանց թաքցնելու կսովորեցնեմ, միայն թե իմ մոտից էն ժամանակ կարող ես հեռանալ, երբ իմ պատրաստած ածուխից լավը պատրաստես։ Տիմոխան էլ իր վրա վստահ լինելով, ասաց.

— Հաստատ խոսք եմ տալիս։

Էդպես էլ որոշեցին ու շուտով ճանապարհ ընկան դեպի ծխոցները։ Նեֆեդ պապը ուրիշ տեսակ մարդ էր… ամեն մի գործի մասին միշտ է՛ն կմրտածեր, թե ո՞նց անի, որ ավելի լավ անի։ Հասարակ կոճղը ջարդելն ու ցախ շինելն ի՞նչ էր, էդ գործում էլ խոսելու բան կգտներ։

— Հալա ինձ նայիր, իմ ուժն արդեն ծերունական ուժ է, կյանքս արդեն մեր է մտնում, բայց քեզնից վատ չեմ ջարդում։ Ինչի՞ցն է էդպես, իսկի մտքովդ անցե՞լ է էդ բանը։

Տիմոխան պատասխանում է.

— Էդ նրանից է, որ կացինդ դիպուկ ես խփում և ձեռքդ էլ վարժված է։

— Բանը հո միայն կացնի ու վարժված ձեռք ունենալու մեջ չի՞, այլ նաև նրանում, որ ես միշտ հաջողակ կետեր եմ փնտրում։

Այդ օրվանից սկսած Տիմոխան ինքն էլ սկսեց իր գործի մեջ հաջողակ կետեր փնտրել։ Եվ տե-

սավ, որ Նեֆեդ պապի խոսքերի մեջ ճշմարտություն կար և հետո՝ էդ բանն իրեն էլ էր հետաքրքիր։ Կոճղ կա, երբ խփում ես, էնպես է թռչում, քեֆդ է գալիս, ու հետո ինքդ սկսում ես մտածել, թե մի ուրիշ տեղ խփեի, գուցե ավելի լավ լիներ։

Այսպիսով Տիմոխան սկզբից ևեթ էդ հաջողակ կետերի մեջ էլ բռնվեց ու մնաց։

Երբ սկսեցին ջարդած կոճղերը կիտել, գործը միանգամից դժվարացավ։ Կարծես հերիք չէր, որ տարբեր ծառի փայտերը տարբեր ձևով պիտի դարսվեր, դեռ պետք է իմանայիր, թե ամեն ծառի հետ քանի տեսակ դեպք կարող է պատահել։ Սոճու թաց տեղը ուրիշ կերպ պիտի վառես, չոր տեղը՝ ուրիշ։ Շուտ է կտրված՝ էսպես, ուշ է կտրված՝ մի այլ ձևով։ Կոճղերը հաստ են — օղանցքները՝ էս տեսակ, մանր են՝ ուրիշ տեսակ, ձողերն էլ՝ հատուկ ձևով։ Դե արի ու գլուխ հանիր։ Հողով ծածկելու ժամանակ էլ, էլի նույնը։

Նեֆեդ պապը էդ բոլորը, ոնց որ պետք էր, տեղը-տեղին բացատրում էր և հետո էլ հիշում, թե ումից ինչ էր սովորել։

— Ծխից հոտ քաշելը ինձ մի որսորդ սովորեցրեց. նրանք, էդ որսորդները ախր լավ հոտառություն ունեն։ Եվ օգուտը իսկույն երևաց։ Քիթս դեմ եմ անում ու թե ծխից հոտ է գալիս՝ օղանցքն իսկույն լայնացնում եմ ու տեսնում — հենց էդ է, որ կա։

Մի անցվոր կին էլ ուրիշ բան գլխի գցեց. մի անգամ էդ կնիկը կանգ առավ կիտուկի մոտ տաքանալու և ասաց. «Էս կողմում կրակն ավելի ուժեղ է»։

— Էդ ո՞նց իմացար,— հարցնում եմ,— ախր փայտը հողով ծածկված է։

— Ա՛յ, թե էսպես, շուրջը մի անգամ պտույտ տաս, դու ինքդ էլ կզգաս,— ասում է նա։

Պտույտ տվի ու զգում եմ՝ կընկա ասածը ճիշտ է։ Դե ես էլ հողն ավելացրի, գործը տեղը բերեցի։ Էն օրվանից նրա ասածը չեմ մոռանում։ Ախր կանանց գործն էնպես է, որ իրենց ողջ կյանքը օջախի մոտ են անցկացնում, կրակի թեժն ու մարմանդը շատ են զգում։

Պատմում էր էսպես ու մեկ էլ սկսում հնարքի մասին հիշեցնել

— Եվ ահա, էդպես, լրիվ մթության մեջ ցատկոտում է մեր հնարք-խանձողը, իսկ դու պետք է գուշակես, որպեսզի նա շատ չայրվի, կամ առանց բոցի ծխալով շուռ չգա։ Հենց միքիչ աչքդ թեքեցիր, կամ շատ այրվելուց ուժը կկորցնի, կամ կիսայրված կմնա։ Իսկ եթե լավ ես դարսել ու ծխի ճամփեքը կարգին սարքել, քո ածուխը զանգի պես կզրնգա։

Տիմոխային էս բոլորը շատ հետաքրքրեց, տեսնում է, որ գործն էստեղ հեշտ չի, հարկավոր է քրտնել, որ բան դուրս գա, իսկ հնարքի մասին էնքան էլ չէր մտածում։

Նեֆեդ պապի հետ նրա պատրաստած ածուխը, ինարկե, առաջին կարգի ածուխ էր դուրս գալիս, բայց և այնպես, երբ սկսում էին ածխի կույտերը հավաքել, պապի ածուխը նրա ածուխին երբեք չէր նմանվում։

— Ինչի՞ցն է էդպես,— հարցնում էր Նեֆեդ պապը, իսկ Տիմոխան, դու մի ասի, հենց ինքն էլ էր էդ մասին մտածում,— արդյոք էդ որտե՞ղ եմ սխալ արել։

Տիմոխան ամբողջ աշխատանքը սովորեց մենակ անել։ Արդեն շատ անգամ նրա ածուխը Նեֆեդյան ածուխից լավ էր եղել, բայց Տիմոխան էդ արհեստը ձեռքից չթողեց։ Չթողեց ու չթողեց։ Մերուկն սկսեց ծիծաղել։

— Հիմա, ախպերս, ոչ մի տեղ չես փախչի, հնարքը քեզ բռնել է, մինչև մահդ բաց չի թողնի։

Տիմոխան ինքն էլ էր զարմանում՝ էդ ինչի՞ցն էր, որ առաջ նրա հետ երբեք էդպես բան չէր պատահել։

— Էդ նրանից է,— բացատրում էր Նեֆեդ պապը,— որ առաջ դու ցածից էիր նայում էն ամենին, ինչ որ արված էր, իսկ երբ վերևից սկսեցիր նայել, մտածեցիր՝ ինչպես անես, որ ավելի



լավ անես։ Եվ հենց էստեղ էլ հնարքը քեզ ճանկեց։ Հնարք ասածդ բանը բոլոր գործերում էլ կա, նա արհեստի առջևից վազ է տալիս ու մարդուն իր ետևից քաշում։ Ա՛յ, բանն էսպես է, բարեկամս։

Էդպես էլ եղավ։ Տիմոխան մնաց ածխագործ և իր համար նույնիսկ մականուն էլ գտավ։ Նա շատ էր սիրում ջահելներին նստեցնել ու իր մասին պատմել, թե ինչպես ինքը երիտասարդ ժամանակ ուզել էր բոլոր արհեստները սովորել, բայց վերջը ածխագործությունն էր ընտրել ու ածխագործ դարձել։

— Ոչ մի կերպ չեմ կարողանում իմ գործի հնարքը բռնել,— ասում էր Տիմոխան։— Երևում է դեռ բազուկներս կարճ են։

Ասում է էսպես ու հետն էլ ջլապինդ բազուկները ճոճում։ Դե, պարզ է, մարդկանց ծիծաղը գալիս է, և ահա նրանք էլ վերջին Տիմոխայի անունը Կարճաբազուկ դրին։ Կատակով, իհարկե, իսկ էնպես՝ ինչքան ասես, գործարանում պատիվ ու հարգանք ուներ։

Երբ Նեֆեդ պապը մեռավ, Կարճաբազուկյան ածուխը առաջինը դարձավ։ Այժմ նրա ածուխն էին հատուկ տեղում լցնում։ Ճիշտն ասած՝ լավ վարպետ էր, իր գործի տերն ու տիրականն էր։

Նրա թոռներն ու ծոռներն էլ մինչև այժմ մեր կողմերում են ապրում։ Նրանք բոլորն էլ իրենց գործի մեջ հնարք են փնտրում և ոչ թե մենակ հույսը դնում ձեռքերի ուժին։ Երևի հասկացել են, որ գիտության շնորհիվ մարդկային բազուկները կարող են աճել ու հասնել ամպերից էլ վեր։

Թարգմ. Օ. ՍԱՆԱՀՅԱՆ

# ԱՆԱՀԻՏԻ ՀԵՔԻԱԹԸ

Խ. ՀՐԱՉՅԱՆ

Նկ. Մ. ՍՈՍՈՅԱՆԻ



Փիսիկն եկավ
Նազիկ, ճճուշ
Եվ աղաչեց
Անուշ, մեղուշ,
— Մյա՛ու, մյաո՛ւ,
Անահիտի՛կ,
Իջիր ներքև,
Արի մոտիկ —
Խաղանք...
Մայրիկն ասաց.
— Փի՛շտ, ա՛յ փիսիկ,
Գնա մառան,
Բռնիր մկնիկ։
Մի՛ խանգարիր
Անահիտին,
Մի՛ խանգարիր
Իմ բալիկին...
Վաղուց արդեն
Գիշեր է ուշ,
Պիտի քնի
Նա մուշ,
Անուշ...
Քուչին եկավ
Կտրին ու քաջ,
Եկավ կանգնեց
Դռան առաջ.
— Հա՛ֆ-հա՛ֆ,
Հա՛ֆ-հա՛ֆ,
Անահիտի՛կ,
Իջիր ներքև,
Արի մոտիկ—
Խաղանք...
Մայրիկն ասաց.
— Ա՛յ դու, Քուչիկ,
Շուտ գնա բակ,
Այնտեղ հաչիր։
Մի՛ խանգարիր
Անահիտին,
Մի՛ խանգարիր
Իմ բալիկին։
Վաղուց արդեն
Գիշեր է ուշ,
Պիտի քնի
Նա մուշ,
Անուշ...
Ուլիկն եկավ
Ցատկոտելով,
Բոժոժիկը
Զնգացնելով.
— Մը՜-մը՜-կը՜-կը՜...
Անահիտիկ,
Իջիր ներքև,
Արի մոտիկ—



Խաղանք...
Մայրիկն ասաց.
Ուլիկ-մուլիկ,
Չալպտուրիկ,
Ճերմակ փորիկ,
Մի՛ խանգարիր
Անահիտին,
Մի՛ խանգարիր
Իմ բալիկին,
Վաղուց արդեն
Գիշեր է ուշ,
Պիտի քնի
Նա մուշ,
Անուշ...
Լսեց փիսիկը մայրիկին,
Լսեց Քուչիկը մայրիկին,
Լսեց ուլիկը մայրիկին.
— Բարի գիշե՜ր...
— Բարի գիշե՜ր...
— Բարի գիշե՜ր
Անահիտին:
Վաղուց արդեն
Գիշեր է ուշ.
Անահիտը
Քնեց մո՜ւշ-մո՜ւշ...

# ԼԵՌԱՆ ԸՆԴԵՐՔՈՒՄ

*Ռ. ԱՐԱՄՅԱՆ*

*Նկ. Ս. ՄՈՒՐԱԴՅԱՆԻ*

*Մոխրագույն թերթաքարեր, լեռներ, լեռներ, մամուռի կանաչ, կապտաերանգ ու կարմիր փռվածքներ և լեռների մեջ օձի նման գալարվող Հրազդան գետը։*

*Ասֆալտապատ մի ճանապարհ Արզնուց իջնում է ձորը, մի կամուրջ ձախ ափը կապում է աջի հետ։ Ինքնաթափ ավտոմեքենաները մեկը մյուսի ետևից սլանում են այդ ճանապարհով, նրանք թերթաքարեր են տանում և ավազ ու ցեմենտ են բերում շինարարության համար։*

*Ո՞րտեղ է շինարարությունը։ Ոչ շենք եմ տեսնում և ո՛չ էլ մարդկանց։ Միայն գետափին մի փոքրիկ տնակ է կանգնած՝ փայտյա եզրազարդ ունեցող պատշգամբով։ Մոտենում եմ այդ հովեկի տնակ հիշեցնող փոքրիկ գրասենյակին։ Սենյակներից մեկում բանվորական համազգեստով երկու հոգի են նստած։ Մեկը 4-րդ շինմասի պետ Վարդանյան Զավենն է, մյուսը՝ ավագ աշխ՛ղեկ ինժեներ Կանդանյան Հարությունը։ Սեղանների վրա փռված են գծագրեր, նրանք ինչ-որ նշումներ և հաշվումներ են կատարում գծագրերի վրա։*

*— Ո՞րտեղ է ձեր շինարարությունը,— զարմացած հարցնում եմ ես։*



*— Հենց այստեղ,— այս լեռան կրծքում,— ցույց է տալիս ինժեներ Կանդանյանը։*

*Լեռան կրծքում... ես ներս եմ մտնում անցուղով։ Ներսում աղմկում են հորատիչները։ Լեռան կրծքում հսկայական մի դահլիճ է փորված, որի մեջ հեշտությամբ կտեղավորվի քաղաքի հինգ հարկանի ամենամեծ շենքերից մեկը։ Դրսից դուք այդ բոլորը չեք տեսնի, դրսից ձեր առջև ծառացած է մոխրագույն քարե լեռը, իսկ ներսում՝ դահլիճ է։ Վագոնիկները իրար հետևից դուրս են տանում փորվածքը։ Ներսում դղիրդ է, հորատիչների աղմուկ, իսկ դրսում՝ լռություն. միայն Հրազդանն է աղմկում։ Ներսում պայթեցում է գնում, իսկ դրսում, լեռան վրա, վայրի աղավնիների բույնն է։ Աղավնիները հանգիստ են, նրանք իսկի չգիտեն էլ, թե ներսում դատարկել են լեռը, որ լեռան մեջ մի մեծ դահլիճ կա։*

*Չգիտես ինչպես մի ծիծեռնակ ներս է ընկել ու պտտվում է քարակոփ դահլիճում։ Հեռավոր մի անկյունում նա արդեն իր համար բույն է շինել, թերևս որոշել է ապրել այստեղ, այս հսկայական դահլիճի քարե պատերից մեկի ցցվածքի վրա։*

*Դահլիճի քարե հատակից աղբյուրներ են բըխում, պարզ, զուլալ աղբյուրներ։ Ջրհանները ջուրը ծծում ու դուրս են մղում։ Հետագայում այստե-*



ղից էլ աղբյուրներ չեն բխի, այստեղ կդրվեն տուրբիններ, կդրվեն մեքենաներ, և էլեկտրականությունը այստեղից կգնա մեր ռեսպուբլիկայի տարբեր ծայրերը։

Լեռան մեջ կառուցվող Արզնի հիդրոէլեկտրակայանի շենքի շինարարության ժամանակաշրջանում հանված է 40 հազար խորանարդ մետր լեռնաքար։ Ջրաճնշման անցուղու բարձրությունը հարյուր մետր է, դեռ ջուր չի իջնում այդ թունելով, բայց կգա մի օր, երբ ջուրը 30 հարկանի շենքի բարձրություն ունեցող անցուղով կգահավիժի ցած՝ դեպի տուրբինները, կաշխատեցնի հսկայական թիակները, և էլեկտրականությունը լարերով կթռչի, կսլանա դեպի մեր Հայրենիքի տարբեր ծայրերը։ Ջրի մի մասը Արզնի-Շամիրամ ջրանցքով կգնա ջրելու Եղվարդի անջրդի, ամայի հողերը, որոնք կզարդարվեն այգիներով, դաշտերով ու բանջարանոցներով։

Ապագա հիդրոէլեկտրակայանի մեծ դահլիճում բանվորներն ինձ պատմեցին մի դեպք.

Դա ձմռանը էր։ Դրսում բուք էր, ձյունափոշին քարաժայռերից թափվում էր ձորի մեջ, քամին պոկում էր չորացած մամուռի կտորները. գետը տնքում էր, թվում էր, թե դրսում քաղցած գայլերի ոհմակ է ոռնում։ Լեռան ներսում աշխատում էին բանվորները, և հանկարծ մարեցին լույսերը, լռեցին հորատիչները։ Քամին պոկել էր էլեկտրալարերը։ Անընդհատ աշխատող ջրհանները դադարեցին ջուր դուրս մղել, ջուրը սկսեց լցվել հիդրոէլեկտրակայանի քարակոփ դահլիճը։ Բանվորները նետվեցին կանխելու հեղեղումը։ Անցուղիներում ջուրն արդեն բարձրացել էր մինչև գոտկատեղը, իսկ դրսում մրրիկը շարունակում էր փոթորկել։ Վեց ժամ անընդհատ նրանք մարտնչեցին հեղեղումի դեմ, վեց ժամ անընդհատ նրանք դուրս մղեցին ջուրը դույլերով, ձեռքերով, բահերով, իսկ դրսում փոթորկի մեջ էլեկտրիկները միացնում էին կտրված գծերը։ Ուշ գիշեր էր, երբ նորից աշխատեցին ջրհանները, երբ ջուրն սկսեց իջնել և հեղեղումը կանխվեց։

Նման դեպքեր այստեղ շատ են եղել։ Ապա մի պատկերացրեք, թե որքան դժվար է դատարկել մի հսկայական լեռ և նրա ներսում հիդրոկայանի դահլիճ ստեղծել։

Ես ձեզ պատմեցի միայն հիդրոէլեկտրակայանի կառուցման մասին, բայց այսպիսի կառուցումներ գնում են նաև Արզնիգէսի շինարարության մյուս տեղամասերում։

Ահա շինարարության առաջին մասը. այստեղ նույնպես Հրազդան գետը շրջապատված է լեռներով։ Զորս կողմը լեռներ են, թերթաքարե՜ր ու թերթաքարե՜ր։ Այս մասում գետի հունը փոխված է։ Նախկին հունը հիմա չոր է և հենց այդտեղ կառուցվում է ապագա ջրամբարը։ Արդեն բարձրացված է ջրի հոսանքը կարգավորող բետոնե պատը և որոշակիորեն գծագրվում է ջուրն ընդունող խցի եզրագիծը։ Այստեղից Հրազդանի ջուրը պետք է ուղարկվի դեպի հիդրոտուրբինները, այն տուրբինները, որոնք դրվելու են լեռան կրծքում, ապագա հիդրոէլեկտրակայանի շենքի ներսում։

Շուտո՛վ, շատ շուտով շինարարները կավարտեն իրենց աշխատանքը, կհանեն վերջին մի քանի հարյուր խորանարդ մետր քարն ու հողը, կբարձրացնեն բետոնե պատերը և նրանց փոխարինելու կգան սարքավորումներ հավաքողները։

Նրանք կտեղավորեն տուրբինները, կամրացնեն ջրատար խողովակները և այն ժամանակ...

Եվ այն ժամանակ կհոսի Հրազդանի ջուրը դեպի հիդրոէլեկտրակայան, կաշխատեցնի տուրբինները, և մենք կստանանք Արզնիգէսի էներգիան։

Ավելի պայծառ կշողան էլեկտրական լույսերը, գործարաններն ավելի արտադրանք կտան և ձեր տետրերի վրա, սիրելի պիոներներ, և ձեր դասագրքերի ու կյանքի ճանապարհի վրա բոլոր հիդրոկայանների լույսերի հետ կվառվի նաև Արզնիգէսի լույսը, պայծառ, շողշողուն լույսը։



# ՋԵՐՄ ՀԱՆԴԻՊՈՒՄ

Վ. ԵՐԿԱՆՅԱՆ

Նկ. Ա. ՋԱՔԱՐՅԱՆԻ

Արևելքից եկող բլուրների ստորոտում, այգիների միջով ձգվում է Այգեստանի փողոցը։ Այստեղ իրար կողքի բարձրանում են Երևանի նորակառույց շենքերը։ Շատ տեղերում նրանք դեռևս փայտամածներով են պատած, վեր են սլանում ամբարձիչ կռունկները, շինարարական հրապարակներից լսվում է կառուցող բանվորների երգի ախորժալուր ձայնը։

Շենքերի մեջ անցորդի ուշադրությունը գրավում է դեղնավուն քարից կառուցված չորս հարկանի մի գեղեցիկ շինություն։ Դա Քասնվեց կոմիսարների անվան դպրոցն է։ Շենքի սյունազարդ կամարները, վարպետ քարտաշի կերտած խոյակներն ու զարդաքանդակները, բակը տանող աստիճանները և նրանց տակ բխող ցայտաղբյուրները հիացմունք են պատճառում։

Կեսօր է։ Դպրոցից դուրս են գալիս վեցերորդ «ա» դասարանի մի խումբ աշակերտներ և աշխույժ քայլում փողոցով։ Նրանցից մեկը՝ Համլետը, առաջ էր անցել խմբից ու չէր մասնակցում զրույ-



ցին։ Նրա ուշադրությունը գրավել էր ներքևում վեհորեն տարածված քաղաքը։

— Մի նայեք, թե ինչ լավն է Երևանը,— հանկարծ դարձավ նա դեպի ընկերները։

— Բան ասացիր։ Ո՞ր ես տեսնում, ի՛նչ է,— վրա բերեց Անահիտը,— լավ է գաս՝ միասին խոսենք մեր առաջիկա հավաքույթի մասին։

— Իսկ ես հենց այդ մասին էլ մտածում եմ,— ասաց Համլետը,— չէ՞ որ նորակառույցներից մեկն էլ մեր դպրոցն է։ Լավ չի՞ լինի, որ մենք հավաքույթի ժամանակ հանդիպենք մեր դպրոցը կառուցող մարդկանց հետ։

— Իսկապե՛ս,— մեջ մտավ Ավրորան,— մենք ամեն տեղ գովաբանում ենք մեր դպրոցը, բայց չենք էլ իմանում, թե ովքեր են կառուցել այն։ Համլետը ճիշտ է ասում։ Մենք շինարարներին կհրավիրենք մեզ մոտ։ Նրանք կպատմեն իրենց աշխատանքի մասին, իսկ մենք նրանց համար կերգենք, կպարենք, կուրախացնենք նրանց։

«Լավ կլինի», «Ճի՛շտ է, ճի՛շտ է» համաձայնեցին մյուսները։

Հաջորդ օրը ավագ ջոկատավար ընկեր Շահնազարյանից երեխաներն իմացան, որ դպրոցը կառուցող շինարարական բրիգադան այժմ աշխատում է Լենինի պողոտայի բնակելի շենքերից մեկի վրա և որոշեցին գնալ այնտեղ։

Կառուցում աշխղեկ-ինժեներ Կարո Այդինյա-



նը պիոներներին ման ածեց շինարարական հրապարակում, ցույց տվեց շաղախ պատրաստող, քար տաշող մեքենաները, ամբարձիչ կռունկը։ Աղասին, որ մի աշխույժ տղա էր, մեջ էր ընկնում ամեն տեղ, փորձում էր օգնել բանվորներին ու շատախոսում էր։

— Տղա ջան,— ասաց նրան տարիքով մի բանվոր,— դեռ քո ժամանակը չի։ Երբ ուսումդ կավարտես, ա՛յ, այն ժամանակ արի մեզ մոտ, աշխատանք կճարվի քեզ համար։

Ամեն ինչ տեսնելուց հետո երեխաները շինարարներին հայտնեցին իրենց հավաքույթի մասին և նրանց հրավիրեցին դպրոց։

...Դպրոցի բակում հավաքված պիոներները սպասում էին հյուրերին։ Շուտով երեխաները ինժեներին, քարտաշ Հարեթին, հյուսն Վարդգես Ղմբոյանին, ճարտարապետ Հակոբյանին և մյուս հյուրերին առաջնորդեցին դպրոց։

Հավաքույթի ժամանակ Ժենյան ու Ջեմման խոսեցին իրենց ջոկատի, պիոներական աշխատանքների, դպրոցի բարեկարգման մասին։ Դպրոցի բակն ու շրջապատը առաջ քարքարոտ էին, խորդուբորդ։ Մյուս դասարանցիների հետ միասին պիոներները բակը մաքրեցին քարերից, հարթեցին ու սկսեցին այնտեղ ծառեր աճեցնել, ծաղիկներ ցանել։

Քարտաշ Հարեթ Վարդանյանը երեխաներին պատմեց, թե ինքն ինչպես է եկել շինարարության։ Նրա հայրը հին քարտաշ է եղել։ Առաջ նա տներ է կառուցել հարուստների համար, աշխատանքը ծանր բեռ է եղել։ Բայց սովետական կարգերի հաստատումից հետո նա որոշել է իր երկու որդիներին էլ սովորեցնել քարտաշի մասնագիտությունը և նրանց հետ միասին կառուցել նոր Երևանը։

— Յոթնամյակն ավարտելուց հետո ես ու եղբայրս սկսեցինք օգնել մեր հորը և շուտով ինքներս էլ քարտաշ դարձանք։ Շատ հրապուրիչ է մեր գործը։ Մարդու մեծ հաճույք է պատճառում, երբ անձև քարի կտորը քո ձեռքի տակ կամաց-կամաց վեր է ածվում գեղեցիկ զարդի, խաղողի ողկույզի կամ եղնիկի։ Ամեն անգամ շենքի մոտից անցնելով նայում ես նրա ճակատին, նկատում քո կերտած զարդաքանդակը և սիրտդ լցվում է հպարտության զգացումով։ Այո՛, այսօր էլ ես նույնն զգացի, երբ մոտեցա ձեր դպրոցի շենքին։ Մեր գործն էլ արվեստ է. եթե քանդակագործի ստեղծած արձանները զարդարում են մեր հրապարակներն ու այգիները, ապա մեր ստեղծածը զարդարում է շենքերն ու փողոցները։

Վարպետը նոր էր վերջացրել խոսքը, երբ բացվեց դուռը և Էդիկը, Լյովան ու էլի երկու պիոներ դժվարությամբ ներս բերին իրենց դպրոցի շենքի մեծ մակետը և դրեցին հատակին։ Այդ մակետը պատրաստել էին «Հմուտ ձեռքեր» խմբակում։ Էդիկն ու Լյովան, որ այդ խմբակի անդամներից են, հավաքույթից առաջ անընդհատ շտապեցնում էին իրենց ընկերներին, որ մակետը ժամանակին պատրաստ լինի։

Բոլորը չորս կողմից շրջապատում են մակետը,

հիանում տղաների աշխատանքով, իսկ Եղիկը հպարտությամբ պատմում է իրենց խմբակի մասին և ապա դառնալով հյուրերին ավելացնում.

— Ձեր աշխատանքի շնորհիվ մեր դպրոցն ունի բոլոր հարմարությունները՝ կաբինետներ, արհեստանոցներ, ֆիզկուլտ դահլիճ, պիոներական սենյակ, գրադարան, բժշկի սենյակ։ Մենք շատ ուրախ ենք դրա համար։ Դուք իսկական շենքն եք կառուցել, իսկ մենք նրա մակետը։

Հետո երեխաների խնդրանքով ճարտարապետ Հակոբյանը նրանց ծանոթացնում է իր նոր նախագծի՝ Հրազդանի ձորում կառուցվող ստադիոնի հետ, որը լավագույնն է լինելու մեր ռեսպուբլիկայում։ Ստադիոնն ունենալու է ֆուտբոլի 2 դաշտ, ծածկված լողարան, խաղերի հրապարակներ ու վազքուղիներ։ Ստադիոնի համար որպես պատեր ծառայելու են երկու կողմի թեքությունները, որոնց վրա էլ տեղադրվելու են նստարանները։

Ինժեներ Այգինյանը, որի հետ պիոներներն արդեն լավ ծանոթ են, պատմում է դպրոցի շինարարության մասին, թե ինչպես են բանվորներն հաղթահարել թեք տեղանքի դժվարությունները և ժամանակին ավարտել կառուցումը։

Յուրաքանչյուր ելույթից հետո երեխաները երգում էին պիոներական երգեր, պարում։ Սրբուհին կատարում է «Ուզբեկական պարը», Ջեմման, Համլետն ու Ավրորան արտասանում են։

Հյուսն Վարդգես Ղմբոյանը, որ 10 տարուց ավելի է, ինչ աշխատում է շինարարությունում, երեխաների ջերմ ընդունելությունից հուզված, ասում է.

— Լավ է շինարարի գործը։ Չէ՞ որ այժմ մեզ պետք են ավելի շատ գործարաններ, դպրոցներ, բնակելի տներ, չէ՞ որ այժմ մեզանից պահանջվում է կառուցել ավելի արագ, էժան ու որակով։ Եվ մենք ջանք չենք խնայում դրա համար։ Իսկ դուք ի՞նչ եք անում։ Հարգո՞ւմ եք մեր աշխատանքը։ Իհարկե, ո՛չ բոլորը։ Ա՛յ, ես նկատեցի, որ միջանցքի պատերը, դռներն ու պատուհանները խզբզված են, փորփրված։ Ովքե՞ր են այդպես արել. իհարկե ձեր ընկերներից են դրանք։ Դուք պետք է հետևեք, որ նրանք չփչացնեն այն, ինչի համար մենք քրտինք ենք թափել։

Երեխաներ, ուսումն ավարտելուց հետո դուք էլ եկեք մեզ մոտ, դարձեք կառուցողներ և կզգաք, թե որքան հաճելի կլինի ձեր աշխատանքը։



## ԾԻՏՆ ՈՒ ԱՂՎԵՍԸ

Մ. ԿՈՐՅՈՒՆ

Նկ. Ա. ԱՌԱՔԵԼՅԱՆԻ



Վաղ առավոտ էր մի գարնանային,
Իր բույնն էր հյուսում ծիտիկը ծառին,
Քաղցած աղվեսը եկավ ու.—Ծիտիկ,
Դու իմ անուշիկ, դու իմ խատուտիկ,
Ինչո՞ւ մենակ ես քո բույնը հյուսում,
Քեզ օգնություն եմ ես ցույց տալ ուզում։
Թե ծառից իջնես ու ինձ մոտ հյուր գաս,
Դալար խոտերով, փետրով աղվամազ
Քեզ համար շատ լավ մի բույն կհյուսենք,
Իրար ջան կասենք ու ջան կլսենք...

Ծիտիկը նրան
Տվեց պատասխան.
— Երբ դու, իրոք, լավն ես ու բարի,
Ինձանից մի քիչ հեռու ման արի...



# Այս տղան ի՞նչ պիտի դառնա

Ս. ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ

Ընտանիքում ամեն մեկը
Աշխատում է ինչքան պետք է։
Իր հիմնարկն է գնում հայրը,
Հավաքում է տունը մայրը։
Ավագ քույրը շուկա գնում՝
Իրեն ընկած գործն է անում։
Պառավ տատն էլ չունի դադար,
Շարֆ է գործում թոռան համար։

Միայն թոռը, փոքրիկ թոռը
Բան չի անում ամբողջ օրը։
Հենց դպրոցից տուն է գալիս,
Խաղերին է ուշքը տալիս։
Դաս պատրաստում կիսատ-պռատ,
Թափառում է պարապ-սարապ։
Անվերջ կինո-թատրոն գնում,
Հագնվում է, ուտում, խմում։



Մեծ-մեծ խոսում ինչքան ուզես,
Հրամայում աղայի պես։
Այսպես ապրում է աշխարհում,
Բոլորովին չի էլ նեղվում։
Բայց ասացեք, երբ մեծանա,
Այս տղան ի՞նչ պիտի դառնա։
Մեր երկրի մեջ այն ո՞վ պիտի
Սրա համար միշտ աշխատի,
Իսկ նա նստի,
Հանգիստ ուտի։

Մարդ վերցնի սրան զոռով
Պինդ փաթաթի բամբակներով,
Ճամպրուկի մեջ դնի հարմար
Եվ ուղարկի արտասահման.
Այնտեղ շատ կա սրա նման...

# ՍՏՈՐԳԵՏՆՅԱ ԱՇԽԱՐՀՈՒՄ

Գ. ԱՐԵՎՅԱՆ

Նկ. Ալ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ



*Հովակիմը աչքերին չէր հավատում. մի՞թե թերթում նկարված այս թիկնեղ երիտասարդն իր ընկերն է՝ Գալուստ Ասրյանը, նա, որ երկու-երեք տարի առաջ իր հետ լողանում էր Ողջիի ջրերում, կարթով ձուկ որսում, աշնանը Դավիթ-բեկի ձորում ընկույզ հավաքում։ Մի՞թե սա այն Գալուստն է, որ մի անգամ բարձրացավ ընկուզենու վրա ու կորավ սաղարթներում։ Այո՛, այո՛, կորավ... Ինքը՝ Հովակիմը ցածից նայում էր վեր, իսկ Գալուստը չկար ծառի վրա։ Նորից նայեց, բայց չգտավ։ Ու մինչ նորից ահաբեկված կնայեր դես ու դեն, հանկարծ Գալուստը ձայն տվեց հարևան ծառի վրայից, այնտեղից էլ միմյանց ագուցած ճյուղերի վրայով անցավ մյուս ծառին, հետո չորրորդին, հինգերորդին, իսկ ընկույզները կարկտի նման հա թափվում էին...*

*Ու ահա, թերթի էջի աչքի ընկնող տեղում նկա-*

րել են Գալուստի՞ն։ Հովակիմը աչքերը չի հեռացնում ընկերոջ պատկերից։

Այդ պահին նրան մոտեցավ ընկերներից մի ուրիշը՝ Սրապ Նազարյանը։ Հովակիմը թերթը մեկնեց նրան.

— Սրապ, Գալուստին նայիր, տես ուր է հասել, իսկ մենք ուր ենք մնացել։

— Հա՛, վաղուց եմ լսել, Գալուստը լավ գնահատականներով ավարտել է Ղափանի ֆաբրիկա-գործարանային ուսուցման հատուկ դպրոցը։ Նա հիմա նշանավոր մարդ է հանքերում։

— Մի նկարի՛ն նայիր, նկարի՛ն,— պնդեց Հովակիմը։

— Ապրե՛ս, Գալուստ,— գոչեց Սրապը՝ հայացքը ընկերոջ պատկերին հառած,— մի տես, մի տես, ոնց էլ տղամարդու նման կուրծքը առաջ է տվել, ասես կովի դաշտում թշնամուն հաղթելուց նոր է վերադարձել։

— Չէ՛, Սրապ, մենք սխալվեցինք, Գալուստի հետ իգուր չգնացինք։ Հիմա ավարտած կլինեինք, մեր ծնողներին էլ կօգնեինք։ Ինչի՞ նման է. պարապ-սարապ չափչփում ենք ավանի փողոցները։ Ի՞նչ գիտենք, թե եկող տարի կընդունվենք, հո բոլորն ինստիտուտ չե՞ն ընդունվելու։ Աշխատանքն էլ դպրոց է, իսկ հանքը... մի շուրջդ նայիր՝ երկաթ, պղինձ, արճիճ, ցինկ, պողպատ, ալյումին... ամեն ինչ հանքից է. համ էլ, էսպես թափառելով ո՞ւր կհասնենք։

Այդ պահին որտեղից-որտեղ մեկը բարձր գոչեց.

— Սրա՛պ, ա՛յ Սրապ, տուն արի, տուն։

Ու Սրապը հեռացավ, Հովակիմին թողնելով մենակ։

Անցան օրեր։ Հովակիմն էլ երկար չսպասեց։ Նա դիմում տվեց և արհեստագործական ուսումնարան ընդունվեց։

Եվ ահա պարապմունքների առաջին շաբաթվա վերջին օրը հանքափորների խմբի վարպետ Կորյուն Առաքելյանը հայտնեց, որ սաների հետ զրույց կունենա երիտասարդ հորատող, ընդերքի նշանավոր նորարար Գալուստ Ասրյանը։

Հովակիմը հուզվեց։ Նա սպասում էր, թե կտեսնի Դավիթ-բեկի ընկուզենիների ճյուղերին ոստոստացող, Ողջիի ջրերում կարմրախայտի նման սպիտակ փրփուրների հետ խաղացող Գալուստին, բայց ահա, թափով ներս մտավ Գալուստը՝ հանքափորի սաղավարտը գլխին, արտահագուստը հագին։ Սաների հայացքները գամվեցին նրան։



— Բոլոր մասնագիտություններն էլ հրապուրիչ են,— բարևելուց հետո սկսեց նա,— սակայն ուրիշ բան է հանքափորը։ Ոչ մի հեքիաթում ես այնպիսի բաների չեմ հանդիպել, ինչպես ստորգետնյա աշխարհում։ Մի վիթխարի, անպատմելի հեքիաթ կա այնտեղ, որ ինչքան էլ ուզում ես ծերին հասնես, չի հաջողվում, և անվերջ մղվում ես առաջ ու առաջ։

Սաները լուռ, ուշադիր սպասում էին, թե ինչ է պատմելու Գալուստը։

— Մի անգամ, հանքախորշը պեղելիս, մուրճի փորիչը մեկեն խրվեց ներս։ Երբ դուրս հանեցի, անցքից ջուր բխեց։ Սկզբում ջուրը պղտոր էր, հետո պարզվեց։ Առու բացեցի, ջրերն սկսեցին բչբչալով հոսել դեպի հանքի ելքը։ Ես շարունակեցի փորել...

Մի պահ դադար առնելով, Գալուստը շարունակեց.

— Երբ օրվա աշխատանքն ավարտելով դուրս եկա հանքից և բռնեցի մեր տան ճամփան, մի զարմանալի բան պատահեց։ Ավանի բոլոր աղջիկներն ու կանայք տխուր կանգնել էին աղբյուրի մոտ և դիտում էին ցամաքած ծորակը։ Ես մնացի

շշմած. ի՞նչ է եղել, ինչո՞ւ է կտրվել։ Անմիջապես հիշեցի հանքախորշում բխած ջուրը ու պոկ եկա տեղիցս, հանք մտա, ամուր խցանեցի անցքը և դուրս եկա։ Աղբյուրը կենդանացել էր։ Ջրերի բլբլան հոսանքն ասես խինդ էր բերել ու բաժանել աղբյուրի շուրջը խռնված մարդկանց։

— Իսկապես հեքիաթ է, չէ՞,— կողքին նստողին շշնջաց սաներից մեկը։

Դա լսեց Գալուստը և շարունակեց.

— Հեքիաթի նման մի բան էլ հենց երեկ եղավ։ Պայթեցումից հետո կորավ երակը։ Պատկերացնո՞ւմ եք, տղե՛րք, կես մետր հաստությամբ երակը կորցնես։ Երկրաբանը հանք եկավ, ամեն տեղ նայեց, բայց չկա ու չկա։ Ինձ կարգադրում է նորից փորել։ Ես ասացի, որ դա ավելորդ է։ Ակադեմիկոս Ֆերսմանի մի գրքում կարդացել էի, որ երբեմն երակները, երկրաշարժերի կամ այլ տեղաշարժումների հետևանքով, կտրտված, այս կամ այն կողմ նետված են լինում։ Նա էլ դա հիշեց և հետո մտաբերեց, որ հարևան հանքում էլ մի անգամ երակը կորել էր, բայց դեպի աջ էին փորել ու գտել։ Ես էլ դեպի աջ փորեցի ու գտա։ Եվ ի՜նչ երակ՝ կարբիդի լապտերի լույսի տակ շերտերը արևի նման փայլփլում էին։

Առկայծում էին սաների աչքերը, այդ իրական հեքիաթները նրանց համար բացեցին ընդերքի դռները, նրանք այնտեղ տեսան մի նոր աշխարհ՝ իր բազում հետաքրքրություններով։

— Սկզբում դուք կդժվարանաք,— եզրափակեց նա,— բայց կսովորեք ամենակարծր երկաթի նման ապառների պեղման արվեստը։ Որպեսզի պայթեցումից ավելի շատ պղնձաքար պոկվի, հարկավոր է անցքերը փորել հատուկ դասավորությամբ։ Ես այդ ամենը աշխատանքի վայրում, հանքախորշում ցույց կտամ ձեզ։

— Ե՞րբ,— մեկեն հնչեց Հովակիմի ձայնը։

Այդ ժամանակ Գալուստը նայեց Հովակիմին և և մնաց զարմացած.

— Վա՜հ, Հովա՞կ, դո՞ւ ես, կեցցես, ի՜նչ լավ ես արել, ա՛յ տղա, ինչպե՞ս չեմ իմացել, իսկ դո՞ւ ինչու չասացիր...

Հովակիմը բոլորի հայացքների ներքո չէր կարողանում բառ գտնել ընկերոջը պատասխանելու, մինչ Գալուստը շարունակեց.

— Հարցնում ես ե՞րբ. շուտով, շուտով, Հովակ ջան, քեզ էնպիսի հանքափոր դարձնենք, որ մի օր էլ էսպես, սաները գան ու քեզնից սովորեն։

* * *

Վարպետ Կորյունը քանդել էր հանքահատ մուրճը և սաներին բացատրում էր, թե փորման ժամանակ ո՞ր մասն ինչ դեր է կատարում։ Սաները ուշադիր լսում էին նրա ամեն մի խոսքը։

Հովակիմն ուշադիր լսում էր. նա սիրեց հանքահատ մուրճը. երբեմն պարապմունքից հետո առանձնանում էր, անջատում մասերը, երկար ու երկար ուսումնասիրում...

Հաջորդ օրերին նա հաճախ էր վարպետին հարցնում.

— Իսկ ե՞րբ ենք հանք գնալու, ե՞րբ։

Երեք շաբաթ հետո վարպետը նրանց հանքափորի արտահագուստներ, սաղավարտներ ու երկարաճիտ կոշիկներ բաժանեց։ Երբ բոլորը տեղավորվեցին ստորգետնյա փոքրիկ տրամվայի վագոնիկներում, Կորյունը էլեկտրատարի վարորդին ասաց.

— Դե՛հ, քեզ տեսնեմ, էնպես քշիր, որ նորեկ տղերքը ասեն՝ «կեցցես, Մնացական»։— Եվ շուռ գալով տղաների կողմը, ավելացրեց.— Մեկ տարի առաջ էլ նա էր նորեկ և ձեզ նման սովորում էր դպրոցում։

Մնացականը հարմարվեց ղեկի մոտ, և լծակը շարժելով, միացրեց էլեկտրականությունը։ Գնացքը պոկվեց տեղից, մտավ ընդերքը, որտեղ դղիրդն ավելի ահեղ դարձավ։ Նրանք անցան վեց կիլոմետր ճանապարհ ու կանգ առան Գալուստի հանքախորշում։

Հովակիմին զարմացրեց ընկերոջ փորձառությունը։ Գալուստը հանքամուրճը այնպես էր տեղադրել գետնին, որ փորիչը ուժգնորեն մխրճվում էր ապառի մեջ։ Նա միայն ձեռքով ուղղություն էր տալիս փորիչին, ճիգ չէր գործադրում, ֆիզիկական լարվածություն չկար։ Ապա հանքափորը սաներին պատմեց, թե ինքն ինչպես է փորում, գործնականում ցույց տվեց այդ ամենը, թույլ տվեց, որ իրենք էլ փորեն։

Հովակիմը առանձին դժվարություն չապրեց, միայն երկյուղ զգաց, առաջին երկյուղը անծանոթ գործի նկատմամբ, որ հետո անմիջապես տեղի է տալիս։ Հանքահատը Հովակիմին հնազանդվեց, որովհետև ինքը նրանով ահա մի քանի շաբաթ է, ինչ զբաղվում էր, մաս առ մաս ուսումնասիրում։ Եվ երբ փորիչը կպցրեց ապառին ու չպտտվեց, իսկույն հասկացավ, որ խողովակի միջով օդ չի անցնում։ Շտկեց խողովակը, փորիչն անմիջապես թրթռաց, թռչկոտեց ապառի վրա,— արագ-արագ հարվածներ հասցրեց։ Այդ առաջին

թրթռոցը ասես իր սրտի թրթռոցների հետ համընկավ. առաջին թռիչքները՝ իր մտքի թռիչքների, արագ հարվածները՝ կարծր ապառներն իրեն հնազանդեցնելու վճռի հետ։ Եվ, երբ փորիչի ծայրը ընդամենը մեկ-երկու սանտիմետր մխրճվեց կարծր ապառի մեջ, Հովակիմի ցնծությունն ավելի բազմապատկվեց. չէ՞ որ դա առաջին բովանցքն էր, որ նա բացում էր իր կյանքում։

Անցան օրեր ու ամիսներ։ Հովակիմն անհամբեր սպասում էր, թե երբ է ավարտելու, որ առնի հանքահատ մուրճն ու կարբիդե լապտերը, գնա, մտնի հանքախորշ, իր ընկերոջ՝ անվանի հանքափոր Գալուստի հետ փորի երկրի ընդերքը, օգտակար մետաղ հանի սիրելի Հայրենիքի համար։

Նրա հայացքը միշտ այն լեռան կողմն էր, որի ընդերքում աշխատում է Գալուստը։ Ահա ինքը՝ Հովակիմն էլ նրա հարևան հանքախորշումն է։ Կողքին տեսնում է ընկերոջը։ Նրանք նայում ու ժպտում են միմյանց։ Կարբիդե լապտերի լույսից ասես ճառագայթում են նրանց աչքերը։ Ընդերքը դղրդում է նրանց հանքահատ մուրճերից։

Նվիրական երազանք...

# ՔՐԻՍՏԱՓՈՐ ԿՈԼՈՒՄԲՈՍ

Կ. ԱՎԵՏԻՍՅԱՆ
(Աշխարհագրական գիտությունների թեկնածու)



Երբ լսում կամ արտասանում ենք Կոլումբոսի անունը, պատկերացնում ենք հեռավոր ու արկածալից ճանապարհորդություններ...

Կոլումբոսը Ամերիկայի հայտնագործողն է։

Նա ծնվել է Իտալիայի Ճենովա քաղաքում։ Դեռ պատանի հասակից սիրել է նավագնացությունը և աշխարհագրությունը։

Այն ժամանակ, երբ Վենետիկի և Ճենովայի վաճառականների նավերը դժվարանում էին գործարքների մեջ մտնել Միջերկրական ծովի արևելքում ընկած երկրների հետ, որտեղից ճանապարհ էր բացվում դեպի Հնդկաստան և Չինաստան, պորտուգալացիները խիզախորեն անցնում էին հարավ և Ատլանտյան օվկիանոսի ջրերով հասնում Աֆրիկայի արևմտյան ափերը, նույնիսկ մինչև Մադեյրա և Կանարյան կղզիները։ Ծովային գործը գնալով ավելի ու ավելի զարգացավ Պիրենյան թերակղզում։ Դրա համար էլ շատ մարդիկ, որոնք իրենց բախտը կապում էին ծովային ճանապարհորդությունների հետ, տեղափոխվում էին Պիրենյան թերակղզի՝ Պորտուգալիա կամ Իսպանիա։ Այդպիսիներից էր նաև ճենովացի Քրիստափոր Կոլումբոսը։ Նրան դեռ ոչ ոք չէր ճանաչում, երբ նա իսպանական արքունիքում հանդես գալով, դեպի Հնդկաստան տանող ծովային մի նոր ճանապարհ գտնելու առաջարկ արեց։ Կոլումբոսն ասում էր, որ երկիրը կլոր է, և ռաջաների հեքիաթային աշխարհը՝ Հնդկաստանը գտնվում է իրենցից դեպի արևմուտք։ Եթե նրան նավեր ու մարդիկ տային, նա կգնար այդ ուղղությամբ։

Կոլումբոսի առաջարկությունը գայթակղիչ էր, և նրան հաջողվեց համոզել իսպանական արքունիքին։

1492 թվականի օգոստոսի 3-ին երեք նավից կազմված արշավախումբը թողեց Իսպանիայի Պոլոս նավահանգիստը և դուրս եկավ բաց ծով։

Քանի նավերը հեռանում էին հայրենի ափերից, այնքան նավաստիների տրամադրությունն ընկնում էր։ Սկսվում են դժգոհություններ ու խռովություններ։ Կոլումբոսը համոզում էր նրանց, որ վերադառնալ չի կարելի, որ պետք է անպայման հասնել Ասիայի արևելյան ափերին։ Սեպտեմբերի 16-ին նրանք մտնում են ջրաբույսերով ծածկըված մի վիթխարի տարածություն։ Արշավախմբի անդամներն ուրախանում են, կարծելով, թե մոտեցել են ափերին, բայց ցամաքը շատ հեռու էր. նրանք գտնվում էին ներկա Սարգասյան ծովում։ Հետագայում պարզվում է, որ այդ ծովը ընդհանրապես պատած է մեծ քանակությամբ ջրիմուռներով։

Հոկտեմբերի 11-ի լույս 12-ի գիշերն էր։ Բոլոր նավերում տիրում էր խոր լռություն։ Արշալույսին հանկարծ նրանցից մեկը հեռվում ցամաք նշմարեց։

— Ցամա՜ք, ցամա՜ք,— բացականչում են բոլորը միաբերան։

Կոլումբոսի ազդանշանով թնդանոթները ողջունում են երևացող ափը։

Եվ իսկապես, հաջորդ օրը նրանց առջև բացվեց մի գեղատեսիլ կղզի։ Այդ ցամաքը այժմյան Բահամյան արշիպելագի կղզիներից մեկն էր, որին բնիկները Գուանախանի էին անվանում։ Սակայն Կոլումբոսը այդ կղզուն Սան-Սալվադոր (Սուրբ Փրկիչ) անունն է տալիս։ Նա հավատացնում էր, թե հասել է Հարավ-Արևելյան Ասիայի մոտակա կղզիներին, այլ խոսքով՝ մոտ է Հնդկաստանին։

Կոլումբոսի մարդիկ տեղացիներին նվիրում էին զանազան բոժոժներ, հուլունքներ, կտորներ։ Դրա փոխարեն բնիկները նրանց բերում էին ուտելիքներ, թռչուններ, հատկապես թութակներ և հնդկահավ։

Կոլումբոսը բնիկներից իմանում է, որ իրենցից հեռու կան ավելի հարուստ կղզիներ ու երկրներ։ Կոլումբոսը համոզված էր, որ ինքը լողում է ասիական կղզիների ափերով։

Արշավախումբը շարունակում է առաջ գնալ։ Նավերը լողում են հրաշագեղ արևադարձային կղզիների միջով։ Հոկտեմբեր ամսին Կոլումբոսը հայտնագործեց Կուբա, իսկ դեկտեմբերին՝ Հաիթի կղզիները։

Կոլումբոսն իր հայտնաբերած երկիրը Հնդկաստան կարծելով, բնիկներին ընդհանուր անունով հնդիկներ անվանեց, որը և տարածվեց Ամերիկայի բնիկների վրա և պահպանվում է մինչև այսօր։ Հայտնաբերած կղզիներն էլ, ենթադրելով, որ Հնդկաստանի մասն են կազմում, կոչեց Վեստ-Ինդիա (Արևելյան Հնդկաստան)։

Արշավախմբի անդամները Վեստ-Ինդիայում տեսան կարտոֆիլ, եգիպտացորեն, ծխախոտ, պամիդոր, որոնք հետագայում Եվրոպա բերվեցին, իսկ ավելի ուշ՝ եվրոպացիները Հարավային Ամերիկայից բերեցին նաև կակաո, խինին, կաուչուկ, թռչուններից էլ՝ հնդկահավը։

Արշավախմբի անդամների մի մասին թողնելով Վեստ-Ինդիայում, Կոլումբոսը վերադառնում է Իսպանիա։

Զանգերի ղողանջի, թնդանոթների կրակոցի, ժողովրդի ցնծագին ողջույնների տակ Կոլումբոսն իր ուղեկիցների հետ Պալոս նավահանգիստը մտավ։

Թագուհի Իզաբելլան հետագայում Կոլումբոսի համար նորանոր արշավախմբեր է կազմակերպում, բայց նրա նավերը Հնդկաստան չեն հասնում։ Թագավորական նոր գաղութից ստացած եկամուտը Կոլումբոսի արշավախմբի ծախսերի համեմատությամբ, աննշան էր։ Այդ պատճառով էլ թագավորը և թագուհին խախտում են Կոլումբոսի հետ կնքած պայմանագիրը։

Կոլումբոսի գործի հետագա անհաջողությունները ավելի են խորանում, երբ Վասկո դե Գաման, շրջանցելով Աֆրիկան հարավից, հասնում է Հնդկաստան։ Իզաբելլայի վաղաժամ մահն ավելի աննպաստ պայմաններ է ստեղծում Կոլումբոսի համար։ Ֆերդինանդ թագավորը չի աջակցում նրա կյանքի վերջին օրերը և չի պատասխանում նրա նամակներին։

Մենակության, աղքատության ու դառը հիասթափության մեջ, Իսպանիայի Վալյադոլիդա փոքրիկ քաղաքում չորս հարյուր հիսուն տարի առաջ, մայիսի 20-ին մեռավ Քրիստափոր Կոլումբոսը։

Նա մեռավ այն համոզմունքով, որ իր հայտնաբերած երկրները հեքիաթային Հնդկաստանի շարունակությունն են կազմում։ Նրա մահվանից հետո միայն պարզվեց, որ Կոլումբոսի հայտնաբերած երկրները կապ չունեն Հնդկաստանի հետ։ Դա մի նոր աշխարհամաս էր, որ հետագայում մի ուրիշ ճանապարհորդի՝ Ամերիկգո Վեսպուչչիի անունով Ամերիկա կոչվեց։



# ՀԵՏԱՔՐՔԻՐ

## ԵՐԱԺՇՏԱԿԱՆ ՎԻԿՏՈՐԻՆԱ

(5 միավոր)

1. *Ո՞վ է աշխարհի դեմոկրատական երիտասարդության հիմնի երաժշտության հեղինակը։*
2. *Թվեցեք սիմֆոնիկ նվագախմբի լարային գործիքների անունները։*
3. *Սովետական ո՞ր կոմպոզիտորն է, որ գրել է օպերա Լ. Տոլստոյի «Պատերազմ և խաղաղություն» գրքի սյուժեով։*
4. *Ռուս հանճարեղ ո՞ր կոմպոզիտորի և ի՞նչ օպերային ստեղծագործությունն էր, որ արգելվեց ցարական կառավարության կողմից, սակայն բեմադրվեց յուրայինների միջոցով իր ամառանոցում։*
5. *Ա. Ս. Պուշկինի ո՞ր ստեղծագործությունների տեքստերի հիման վրա են գրված օպերաներ և ովքե՞ր են դրանց հեղինակները։*

Կազմեց՝ Գ. ՍՐՎԱՆՁՏՅԱՆ

## ԱՇԽԱՐՀԱԳՐԱԿԱՆ ԱՌԱՋԱՐԿ

*Հետևյալ բովանդակությամբ իրար տակ գրեցեք վեց անուն, որոնցից յուրաքանչյուրը կազմված լինի յոթ տառից.*

*1. Նավահանգիստ Գերմանիայում, 2. Քաղաք Իտալիայում, 3. Աշխարհի ամենաբարձր լեռնագագաթը, 4. Մարզային կենտրոն Ուզբեկստանում, 5. Գետ Հարավային Ամերիկայում, 6. Ջրվեժ Ամերիկայում։*

*Եթե պահանջվող անունները ճիշտ գտնեք, ապա կենտրոնական ուղղահայաց շարքում դուք կկարդաք ռուս նշանավոր ծովագնացի ազգանունը, որը ծնվել է 1680 թվականին։*

Կազմեց՝ Ա. ՄԿՐՏՉՅԱՆ

## ԿԱՐՈ՞Ղ ԵՍ՝ ԳՏԻՐ

(2 միավոր)

*Հետևյալ վեց նկարներից ո՞րի մեջ է հանգույց*




*ստացվում, եթե ձգելու լինենք թոկի երկու ծայրերից։*

Առաջարկ՝ Է. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

## ՓՈՐՁԻՐ

*Առանց մատիտը թղթից կտրելու մեկ անընդհատ գծով գծեք այս ֆիգուրան։*

Առաջարկ՝ Մ. ՕԹԱՐՅԱՆԻ



## ԳՏԻՐ ԳԱՂՏՆԻՔԸ

*Իմ որդի Աշոտը շատ է սիրում հետաքրքրաշարժ խնդիրներ և հանելուկներ։ Մի անգամ նա ինձ ցույց տվեց Սովետական Միության խոշոր գետերի մի անվանացանկ և հինգ բաժանումներով աղյուսակ։ Անվանացանկում գրած էին հետևյալ գետերի անունները.*

1. Վոլգա, 2. Դնեպր, 3. Դոն, 4. Լենա, 5. Օբ, 6. Ենիսեյ, 7. Պեչորա, 8. Ամուր, 9. Դնեստր, 10. Նեման, 11. Հյուսիսային Դվինա, 12. Իրտիշ, 13. Անգարա, 14. Սիր-Դարյա, 15. Ամու-Դարյա։ Իսկ աղյուսակի սյունակներում գրված էին.

| 1 | 2 | 3 | 4 | 5 |
|---|---|---|---|---|
| ԱՄՈՒ-ԴԱՐՅԱ | ՕԲ | ՍԻՐ-ԴԱՐՅԱ | ՊԵՉՈՐԱ | ԵՆԻՍԵՅ |
| ԱՆԳԱՐԱ | ՆԵՄԱՆ | ԱՆԳԱՐԱ | ՍԻՐ-ԴԱՐՅԱ | ԱՄՈՒՐ |
| ԻՐՏԻՇ | ԴՈՆ | ՕԲ | ԴՆԵՍՏՐ | ԱՆԳԱՐԱ |
| ՎՈԼԳԱ | ՀՅՈՒՍ.-ԴՎԻՆԱ | ՆԵՄԱՆ | ԱՄՈՒ-ԴԱՐՅԱ | ՀՅՈՒՍ.-ԴՎԻՆԱ |
| ԴՈՆ | ԻՐՏԻՇ | ԱՄՈՒՐ | ՀՅՈՒՍ.-ԴՎԻՆԱ | ՍԻՐ-ԴԱՐՅԱ |
| ԼԵՆԱ | ԱՄՈՒ-ԴԱՐՅԱ | ՊԵՉՈՐԱ | ԱՆԳԱՐԱ | ԴՆԵՍՏՐ |
| ԵՆԻՍԵՅ | ՍԻՐ-ԴԱՐՅԱ | ԼԵՆԱ | ԻՐՏԻՇ | ԱՄՈՒ-ԴԱՐՅԱ |
| | ԴՆԵՊՐ | ԱՄՈՒ-ԴԱՐՅԱ | | ԻՐՏԻՇ |
| | | | | ՆԵՄԱՆ |

— Մտքումդ պահիր այս գետերի անուններից որևէ մեկը,— առաջարկելով ինձ աղյուսակը, ասաց Աշոտը,— և ասա, թե ո՞ր սյունակներում ես հանդիպում այդ անվանը։

Կատարելով նրա առաջարկը, ես ասացի.

— Պահածս անվանը հանդիպեցի 2-րդ, 4-րդ և 5-րդ սյունակներում։

— Հյուսիսային Դվինան է,— թռուցիկ կերպով գետերի անվանացանկին նայելով ասաց Աշոտը։

Ես զարմացա։

Տղային փորձելու համար երկրորդ անգամ մտքումս պահեցի այն գետի անունը, որը գրված էր աղյուսակի բոլոր սյունակներում։

— Ամու-Դարյա,— համարյա առանց մտածելու պատասխանեց Աշոտը։

— Ճիշտ է, բայց դու ինչպե՞ս այդ գտար։

— Ինքդ կռահիր,— խորամանկորեն ժպտալով ասաց նա։

Մի փոքր մտածելուց հետո ինձ հաջողվեց գտնել այս հետաքրքրաշարժ խաղի «գաղտնիքը»

Երեխաներ, դուք էլ փորձեցեք գտնել այդ «գաղտնիքը»։

«Գաղտնիքը» պարզելուց հետո կազմեցեք նույնպիսի անվանացանկեր ու աղյուսակներ։ Այդ անվանացանկերը կարող եք կազմել աշխարհագրական և գրական-գեղարվեստական ցանկացած անուններից։ Դրանք կարելի է նախօրոք կազմել և տանել պիոներական ճամբար։

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկը՝ նկ. Գ. ԽԱՆՋՅԱՆԻ

Ձեռագրերը չեն վերադարձվում

**Խմբագրական կոլեգիա**

ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԽԱՉԱՏՐՅԱՆ Հ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Ս. (խմբագիր), ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Պ. (պատասխանատու քարտուղար), ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՕՀԱՆՅԱՆ Ս.

**„Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Маркса 21.**

Հասցեն՝ Երևան, Մարքսի փողոց № 21, հեռախոսներ՝ 2-44-83, 2-59-06

ՎՖ 02805։ Պատվեր 587։ Տիրաժ 4500։ Տպագրական 4,1 մ.։ Ստորագրված է տպագրության 30/V 1956 թ.։

ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Հրատարակչությունների և պոլիգրաֆ արդյունաբերության Գլխավոր վարչության № 1 տպարան, Երևան, [illegible] փող. № 65։



# ՇԱԽՄԱՏԻ ԿՈՆԿՈՒՐՍ

«Պիոներ» ամսագրի խմբագրությունը հայտարարում է շախմատի խնդիրների և էտյուդների լուծման կոնկուրս:

Առաջարկվում է ութ խնդիր և չորս էտյուդ: Ամսագրի այս համարում տրվում է չորս խնդիր և երկու էտյուդ:

Պատասխանները պետք է ուղարկել ամսագրի տվյալ համարի լույս ընծայումից ոչ ուշ, քան մեկ ամսվա ընթացքում:

Հաղթողները խմբագրության կողմից կպարգևատրվեն:

ԽՆԴԻՐ № 1 Մատ երկու քայլից



ԽՆԴԻՐ № 2 Մատ երեք քայլից



ԽՆԴԻՐ № 3 Մատ երեք քայլից



ԽՆԴԻՐ № 4 Մատ երեք քայլից



ԷՏՅՈՒԴ № 1



Սկսում են սպիտակները, և խաղը ավարտվում է ոչ ոքի:

ԷՏՅՈՒԴ № 2



Սկսում են սպիտակները և շահում են խաղը:




## ՀԱՅՐԵՆԻՔԻՍ

Հայրենի՛ք իմ շեն ու խաղաղ,
Մայրական գի՛րկ դու սիրասուն,
Չկա՛ քեզ պես երկիր շքեղ
Հողագնդի ոչ մի մասում:

Գարուն ես դու, հավե՛րժ գարուն,
Մենք՝ մեղուներ աշխատասեր,
Մենք՝ թիթեռներ ժիր, թռվռուն՝
Քո դաշտերում քո բարեբեր:

*Ս. ՄԿՐՏՉՅԱՆ*